ՄԱՐՏ
№ 3 1964 Թ.




ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
36-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

*ՎԱԽԹԱՆԳ ԱՆԱՆՅԱՆ*




Մեծ, շատ մեծ դեր է խաղացել «Պիոներ»-ը իմ կյանքում: Բավական է ասել, որ իմ որսորդական առաջին պատմվածքը տպագրվել է նրա էջերում: «Պիոներ»-ը ոչ միայն տպագրել, այլև ինձ ստիպել է գրիչ վերցնել ու գրել իմ առաջին որսորդական գործը:

... Նոր էի գյուղից եկել, աշխատում էի «Ավանգարդ»-ի խմբագրությունում: Շոգ էր, կարոտում էի մեր սարերի հովին, քաշվելով ու կարմրելով դեպքեր էի պատմում իմ որսորդ ընկերների կյանքից: Մի անգամ էլ խմբագրատանը պատմեցի, թե ինչպես մանուկ ժամանակս առաջին անգամ արջի որսի գնացի: Ունկնդիրներս հետաքրքրությամբ էին լսում՝ Ստ. Կուրտիկյանն էր, Բ. Շահումյանը, Ռ. Աթայանը և «Պիոներ»-ի խմբագիր (թե՞ պատ. քարտուղար) Հրաչ Միրզոյանը:

— Պատմածդ տպելու բան է,— իր հեղինակավոր կարծիքը հայտնեց Ռ. Աթայանը. մեր բոլորի գրածները նա էր ուղղում, նա մեր բոլորից գրագետ էր:

Իսկ Հրաչ Միրզոյանը ոչինչ չասաց. նա ուղղակի թղթեր տվեց ինձ՝ կոշտ, հաստ, շագանակի գույնի երկար թղթեր, և ասաց.

— Գրի՛, «Պիոներ» - ում տպենք:

Ես կարմրեցի, քրտնեցի, անհարմարությունից շնչասպառ եղա, կատակ բան չէր է՜. խմբագրությունն ինձ պատմվածք էր պատվիրում...

— Դա իմ բանը չի,— կմկմացի ես,— պատմվածք գրած չկամ...

Ճիշտ է, թերթերում լույս էին տեսնում իմ հոդվածներն ու ակնարկները, բայց պատմվածք գրելը ես ինչ-որ բարձր, ինչ-որ անհասանելի բան էի համարում:

— Գրիր այնպես, ինչպես որ պատմեցիր,— խորհուրդ տվեց ինձ Հրաչը։

«Ո՞նց թե, ուրեմն պատմվածք գրելը այդպես հասարակ բա՞ն է եղել: Չէ՜, գրականությունն ինչ-որ վեհ, աստվածային բան է, նա այդպես հասարակ ձևով չի ստեղծվում, ինչպես սրանք են կարծում,— մտածում էի ես:— Ես՝ լեռնցի մի պատանի, որի հոգեկան սնունդը իր սիրած սարերում գրքերն են եղել և որը գրողներին համարել է ոչ ավել, ոչ պակաս, քան կիսաստվածներ: Ու հիմի... Չէ՜, սա սրբապղծություն է, սա իմ բանը չի»։

Որ շատ ստիպեցին, սկսեցի գրել հենց գրասենյակում, ժխորի մեջ, մարդկանց ներկայությամբ և գրելու ընթացքում հետզհետե տեղափոխվեցի մեր Հաղարծնի ծմակն ու մոռացա շրջապատս, նույնիսկ չէի տեսնում մարդկանց և չէի լսում նրանց ձայնը:

Միայն ուշքի եկա այն ժամանակ, երբ լսեցի Խնկո-Ապոր ձայնը.

„— Զոքա՛ն, գնա քո օբան...[1]

Միշտ ինձ այդպես էր դիմում նա:

Հարևան սենյակում «Մանկալ»-ի խմբագրու-

[1] Օբա — սարվորների վրանները։

թյունն էր տեղավորված, ուր և աշխատում էր Խնկո-Ապերը և օրվա մեջ մի քանի անգամ մտնում էր մեզ մոտ՝ ջահելներիս քեֆը հարցընելու։

— Մ՛-մ՛-մ՛, պատմվածք է գրում...

Լրիվ քրտնեցի։

Արդեն վերջացրել էի, ուզեցի թաքցնել կամ պատռել՝ չհաջողվեց, ձեռքիցս խլեցին։ Հրաչը, որ կարճատես էր, գրածս թղթերը քթին քիպ մոտեցրած, կարդում էր մտքում, իսկ ես սրտատրոփ սպասում էի նրա վճռին։

— Ստացվել է... Կտպվի...

Այդքան միայն ասաց երբեք չոգևորվող, միշտ լուրջ և հավասարակշռված այդ տղան։

Ուրախությունից քիչ էր մնում գրկեմ համբուրեմ։

Իսկ երբ «Պիոներ»-ում տեսա պատմվածքս, ոչ միայն տպված, այլև նկարազարդված, անունս էլ մեծ-մեծ տառերով, ուրախությունից բարձրացա յոթերորդ երկինքը, ապա ամոթից արագ ցած իջա ու չգիտեի, թե որտեղ թաքցնեմ գլուխս...

Առաջին պատմվածքը... Կա՞ ավելի թանկագին բան մարդու համար։

Դրանից հետո ահա 35 տարի է անընդմեջ աշխատակցում եմ իմ սիրելի «Պիոներ»-ին, որը հասակ առնելու, ծերանալու փոխարեն, մի անգամ նույնիսկ փոքրացավ դարձավ «Հոկտեմբերիկ»։ Կորցրել եմ թիվն այն պատմվածքների, որ «Պիոներ»-ը տպագրել է ինձնից։ Բայց այն մեկը, առաջնեկը, ուրիշ բան էր։ Նրա առաջացրած բերկրանքը իմ հոգում ուրիշ էր, ավելի մեծ, քան ինձ բերին հետագայում գրածս հաստափոր գրքերը։

ԽՄԲԱԳՐՈՒԹՅԱՆ ԿՈՂՄԻՑ.—Վ. Անանյանի որսորդական առաջին պատմվածքը՝ «Արջի ճանկերում» խորագրով, տպագրվել է «Պիոներ»-ի առաջին համարներից մեկում։ Հետագայում այդ պատմվածքը թարգմանվել և լույս է տեսել բազմաթիվ լեզուներով՝ անգլերեն, բենգալերեն, ճապոներեն, չինարեն, հինդի լեզվով, արաբերեն, լեհերեն, ռումիներեն, ղազախերեն, ռուսերեն։

Նկ. ԱԼԵՔՍԱՆԴՐ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ


ՀԱՍՌ-Арм ССР
... им. А. Мясникяна
ՄՅԱՍՆԻԿՅԱՆԻ ԱՆՎԱՆ

# ՏԱՍՆՄԵԿԵՐՈՐԴԸ

ՀԱՅԿ ՎԱՐԴԱՆՅԱՆ

Ես ու Աշոտը նստել էինք մեր բակի պատին ու փշատենուց կտրած ճիպոտներով խփում էինք մասրենիներին։

Մեր թաղն արդեն սկսել էին քանդել, տեղը մեծ շենքեր պիտի կառուցեին։ Փորել էին հիմքերը, անազին շատ քար էին բերել... Քանդել էին և մեր տան հետևի՝ փոքր բակի պատը ու դեպի կողքի նրբանցքը կարճ ճանապարհ էր բացվել։

Նրբանցքի բնակիչներից շատերը արդեն մեր բակով էին անց ու դարձ անում։

Ես ու Աշոտը ճիպոտով հարյուր մեկ անգամ հարվածեցինք մասրենիներին ու ձանձրացանք։

— Էլ ի՞նչ անենք,— հարցրեց Աշոտը։

Իսկապես որ անելու բան չկար։

Բակով գալիս էր նրբանցքում ապրող Համլիկը։

— Ե՛կ, ոչ ոքի չթողնենք այստեղից անցնի,— ասացի ես։

Աշոտը զարմացավ, մի քիչ մտածեց, հետո հարցրեց.

— Ինչու՞։

— Թող իրենց հին, երկար ճանապարհով գնան։

Աշոտը ոչինչ չասաց։

— Ե՛տ դարձիր,— ասացի ես ու բարձրացրի ճիպոտս։

Համլիկը լայն-լայն բաց արեց աչքերը։

— Ինչու՞։

— Մեր բակով չենք ուզում ոչ ոք անցնի,— ասացի ես։

— Սա արդեն ձեր բակը չի,— ասաց նա,— պատերը քանդել են, սա արդեն փողոց է։

— Մեկ է,— ասացի ես։

— Աղջիկներին թողնենք թող անցնեն,— ասաց Աշոտը։

— Չէ՛,— ասացի ես։

— Դու գիտես,— ասաց Աշոտը։

— Ես էլ կսպասեմ,— ասաց Համլիկը ու նայեց քիչ հեռու, կտրված ծառի բնին։

— Ինչքան ուզում ես՝ սպասի՛ր,— ասացի ես ու սկսեցի սուլել։

Աշոտն էլ սկսեց սուլել։

— Պիոներները չեն սուլում,— վրդովված ասաց Համլիկը։

Աշոտը անմիջապես սսկվեց, բայց ես շարունակեցի սուլել։

— Որ մյուս ճանապարհով գնայիր, հիմա հասել էիր,— սրտնեղած ասաց Աշոտը։

— Քո ի՞նչ բանն է, թող նստի,— ասացի ես։

Համլիկը, շատ լուրջ, նստած սպասում էր։ Հետո

digitised by A.R.A.R.@



սկսեց ձև թափել. բաց արեց գիրքը, որ նոր վերցրել էր գրադարանից, ու սկսեց կարդալ։ Մի քիչ հետո էլ՝ ոտքը գցեց ոտքի վրա։

Աշոտը երկարեց վիզը և ուզում էր իմանալ՝ ինչ գիրք է կարդում Համլիկը։

Հետո նա չդիմացավ ու հարցրեց.

— Ի՞նչ գիրք է։

— Գրիմ եղբայրների հեքիաթները,— առանց գլուխը բարձրացնելու՝ պատասխանեց Համլիկը։

— Չեմ կարդացել,— հուսահատ ասաց Աշոտը,— կտա՞ս կարդամ։

— Երբ վերջացնեմ,— դժգոհ փնթփնթաց Համլիկը։

— Թողնենք թող անցնի,— կամացուկ ասաց Աշոտը։

— Չէ՛,— ասացի ես,— որոշել ենք, ուրեմն, վե՛րջ։

Երևաց Գևորգը. նա մի բան չէր, բայց եղբայրը ուժեղ էր։

— Գևորգը թող անցնի,— ասացի ես։

— Ինչու՞,— զարմացավ Աշոտը։

— Դե, հո բոլորին չպիտի՞ պահենք... մեկը թող չանցնի, մեկը անցնի։

— Չէ՛,— հակառակեց Աշոտը,— մեկը թող անցնի, իսկ մեկը չանցնի։

— Չէ՛,— ասացի ես, և Գևորգը անցավ։ Հետո անցավ Հրաչիկի հայրիկը։

— Մեծերին կարելի է,— ասացի ես։

Հեռվից վազելով գալիս էր Պերճը։ Չնայած նա ուժեղ չէր, բայց շատ կռվազան էր։

Նա կանգ առավ, նայեց մեկ ինձ, մեկ Համլիկին, ու գլխի ընկավ։

— Չլինի՞ չեք թողնում մարդ անցնի։

— Չենք թողնում,— ասացի ես։

— Էնպես անցնեմ ո՞ր...— սպառնաց նա, բայց մնաց կանգնած. պարզ էր, նա ուզում էր կռիվ սարքել։

— Կռի՞վ ես ուզում,— հարցրեց Աշոտը։

— Թե ուզենամ, առանց կռվի էլ կանցնեմ,— անտարբեր ձևանալով ասաց նա։

— Փորձիր տեսնենք,— ասացի ես ու թափահարեցի ձեռքիս ճիպոտը։

— Դեռ չեմ ուզում,— ասաց նա։

— Էլ ինչո՞ւ էիր վազելով գալիս,— ասաց Աշոտը։

Պերճը բամ-բամ ծիծաղեց, հետո սկսեց շվացնել ու կրունկի վրա պտույտ գալ։

Նա մեր դպրոցի ամենալավ պարողն էր և ամեն անգամ, երբ ելույթ էր ունենում, անպայման մի քանի անգամ մատների վրա պտտվում էր, որովհետև գիտեր, որ դրա համար ծափ պիտի տան։

— Ուրեմն չե՞ք թողնում,— դարձ հարցրեց նա և ուրախացավ, երբ մենք նորից ասացինք, որ չենք թողնելու։

— Համլիկի՞ն էլ չեք թողնում անցնի։

— Համլիկին էլ չենք թողնում,— ասացի ես։

Նա ավելի ուրախացավ. հիմա նա կռվի ավելի հիմնավոր առիթ ուներ։

— Լա՛վ,— ձոր տվեց նա։ — Ուրեմն հաստատ որոշե՞լ եք։

— Հաստա՛տ,— ասացի ես։

— Շատ լավ,— նա կրունկի վրա էլի մի քանի պտույտ արեց։

Գնդակը թևատակին հայտնվեց Շահենը։

— Ի՞նչ է կատարվում այստեղ,— հարցրեց նա։

Նա միշտ էլ այդպես, գրքերից սովորած նախադասություններով էր խոսում. դրա համար էլ ո՛չ կարողանում էր կռվել, ո՛չ էլ կոպիտ խոսք ասել։

— Դեռ ոչինչ...— բմծիծաղ տվեց Պերճը։ — Եկ մի քիչ գնդակ խաղանք, հետո...

— Հաճույքով,— համաձայնեց Շահենը,— ես հենց դրա համար էլ եկել եմ։ Միայն անհրաժեշտ է Նորիկին էլ կանչել։

— Անցնել չի կարելի,— ասացի ես։



digitised by A.R.A.R.@

Շահենը զարմացավ։

— Ճիշտ չես անում։

Գերճը արդեն վերցրել էր գնդակը և բակի կենտրոնում, որ երկու ծառերի միջև ցանցի պարան էր կապված, սպասում էր նրան։

— Ե՛կ,— ձայն տվեց նա,— դրա հետ հետո կըխոսենք։

Նրանք սկսեցին վոլեյբոլ խաղալ. քիչ անց, նրանց միացավ և Համբիկը։

Աշոտը անհանգիստ հետևում էր նրանց խաղին.

— Մի կողմը երկու խաղացող է, մյուս կողմը՝ մեկ։

Նա այդ ասաց կարծես ինքն իրեն, հետո անսպասելի ցատկեց պատից ու վազեց խաղացողների կողմը։

— Սպասի՛ր,— բարկացա ես,— ի՞նչ գործ ունես։

— Հիմա, հիմա, մի քիչ խաղամ՝ կգամ,— առանց ես նայելու ասաց նա ու միացավ խաղացողներին։

Նկ. ՖԼՈՐԱ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ





— Քե՛զ էլ չեմ թողնի այստեղից անցնես,— ձայն տվեցի ես։ Բայց նա կարծես չլսեց ինձ։

Նրանք առանձնապես լավ չէին խաղում։ Շահենը էլի ոչինչ... Երբեմն լավ գնդակներ էր բռնում, բայց մյուսները... մանավանդ Գերճն ու Աշոտը... ա՛յ, հիմա Գերճը պատահաբար մի լավ գնդակ խփեց, իսկ Աշոտը... ոնց որ... ոնց որ նա էլ վատ չի խաղում... Ոչ՛, իսկ Համբիկը... Ոչ՛, նա աղջիկ է... չնայած նա էլ ոչինչ...

Բայց առհասարակ, բոլորը միասին, մի բան չեն։ Չգիտես որտեղի՞ց եկավ Դավիթը։ Հիմա երկուսը խաղում են երեքի դեմ, մի խաղացող պակաս է։ Գիտեմ, սպասում են, որ ես գնամ։ Թող սպասեն. թող մի քիչ սպասեն։

Բայց որտեղից-որտեղ լույս ընկավ Սուրիկը. փոխանակ պարապելու, եկել է վոլեյբոլ խաղալու։ Անցյալ քառորդին երկու հատ «երեք» ուներ... Ո՞նց էլ խաղի ձայնն առավ։ Մի խաղացող էլ լինի։ Էլի մարդ եկավ։ Այն էլ՝ երկու հոգի։ Երվանդն ու Արամը։ Դրանք էլ միշտ միասին են, ոնց որ քույր ու եղբայր լինեն։ Նորից հավասար են։ Չորսով չորս։ Նրբանցքի կողմից երևաց Արևիկը։ Լավ, թող անցնի։ Նա վազեց խաղացողների կողմը։ Հիմա էլի մեկը պակաս է, բայց ինչու Համբիկը դուրս եկավ խաղից։ Նորից չորսով չորս։ Համբիկը մոտեցավ։

— Չեմ թողնի,— ասացի ես։

— Իսկ Արևիկին ինչու՞ թողիր։

— Որովհետև նա խաղալու համար էր գնում։

— Ես հիմա կվերադառնամ,— ասաց նա,— իսկույն, մեկ րոպեից կվերադառնամ։

— Ազնի՞վ խոսք։

— Ազնիվ խոսք։

— Դե, լավ, գնա՛, միայն թե շուտ արի։

— Գալիս եմ։

Լավ աղջիկ է Համբիկը, միայն թե մինչև նրա վերադառնալը, նոր մարդ չգա. թե չէ, նրա գալուց հետո խաղացողները նորից կհավասարվեն։

Համբիկը շուտ վերադարձավ. բայց մենակ չէր։ Սոնայի հետ էր, բայց ես, չգիտես ինչու, թողեցի, որ Սոնան էլ անցնի։

Կողմերը նորից հավասար էին, խաղում էին և ո՞նց էին խաղում։ Ու կարծես հակառակի պես էլ ոչ ոք չեկավ։

Ես հարյուր անգամ հաշվեցի խաղացողներին, ինձ էլ հաշվեցի նրանց հետ... Միշտ էլ կենտ թիվ էր ստացվում։

Դե, իհարկե... տասին գումարած մեկ, միշտ էլ հավասար է տասնմեկի։

digitised by A.R.A.R.@




*ՀՈՎՀԱՆՆԵՍ ՇԻՐԱԶ*



Ես շվի եմ ուզում շինել,
Ես հովիվ եմ ուզում լինել
Սարի լանջում,
Հով կանաչում,
Ուր աղբյուրներն ինձ են կանչում:

Կեսօրվա դեմ նստեմ քարին,
Փչեմ կանչեմ ոչխարներին,
Գետում ջրեմ
Ու գյուղ բերեմ,
Մորս գառի պես համբուրեմ:

Մայրս կթի ոչխարները,
Ես էլ ուտեմ կաթի սերը,
Մի քիչ մնամ,
Հանգստանամ,
Մահակս առնեմ ու վեր կենամ:

Գամփռիս հետ շվիս հանեմ,
Հոտը ձորից սարը տանեմ,
Երբ մութն ընկնի՝
Իմ գառների
Հոտը սարի փարախն անեմ:

Ես շվի եմ ուզում շինել,
Քաջ հովիվ եմ ուզում լինել,
Գայլի սարում,
Գայլի ձորում,
Ուր գայլի պես ամպն է գոռում:
Քանի սարին հայրիկս կա՝
Գայլը գառիս մոտիկ չի գա:

# ԳԵՂԵՑԻԿ ԼԻՆԵԼՈՒ ԳԱՂՏՆԻՔԸ

*ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ*

*Նկ. ԼԻԴԱ ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ*

Այդքան նոթոտ աղջիկ, երևի, ո՛չ եղել էր, ո՛չ կար և ո՛չ էլ կարիք կար, որ երբևէ լիներ: Քիթը միշտ կախ, հոնքերը՝ կիտած, շրթունքներին՝ շարունակ դժգոհություն, ինքը՝ վերին աստիճանի անշնորհակալ:

— Արա՛գ շարժվեք,—հրում է տրամվայում առջևից գնացողին, չնայելով նա ծե՞ր է, թե՞ հիվանդ: Հրում է, առաջ անցնում և դեռ փնթփնթալով էլ շարունակում ճամփան:

Փողոցում հանկարծ մեկը կպչում է թևին:

— Ձեզ կարգին պահեք...—նետում է, նախքան կնայի, թե ով էր, և նախքան մյուսը կհասցնի ներողություն խնդրել:

Տան դուռը փոքր-ինչ ուշացումով է բացվում:

— Խլացե՞լ եք...—գոռում է բացողի վրա, որ այս անգամ փոքր եղբայրն էր:

— Մաման քեզ համար նոր կոշիկներ է առել:— Չնայած քրոջ կոպտությանը, եղբայրը շտապում է նրան ուրախացնել: Բայց քրոջ դեմքին ժպիտ չի երևում:

— Ո՞ւր է ... Սրա՞նք են, ես այսպիսի կոշիկներ չէի ուզում: Ես այդպես էլ գիտեի, որ իմ ուզածը չի առնելու:

— Արի ճաշի՛ր...—խոհանոցից ձայն է տալիս տատը:

— Ա՞յս է ճաշը... Մի կարգին բան չկարողացա՞ր եփել...

— Հետո էլ խնձոր կտամ,—եղբայրը նորից է փորձում նրան ուրախացնել ու հաշտեցնել ճաշի հետ:

— Քո՛ աչքը լույս, խնձոր դու՛ ես սիրում, դու՛ էլ կեր: Իսկ տանձ, իհարկե, չեն առնի, որովհետև գիտեն՝ ես տանձ եմ սիրում:



digitised by A.R.A.R.@

— Խնձորն էլ է համով.— ասում է եղբայրը.— ուզու՞մ ես՝ բերեմ տես: Հա՞, բերե՞մ...

— Գլուխ մի՛ ցավեցրու...

Նա չէր ուզում եղբորը վայր գցել. բայց երբ հրեց, այնպես ստացվեց, որ նա ընկավ ու բարի տղան սկսեց ակամա վրեժխնդրությամբ ճչալ.

— Հրե՜շ. էլի՞...

Վրա հասավ մեծ եղբայրը, փոքրին բարձրացրեց: Բոլոր դժգոհություններին ավելացավ և այդ վիրավորանքը: Նա խռովեց ու, չճաշած, գնաց: Փորձեց թաքուն նայել հայելուն, խկապես մի չարացած հրեշ տեսավ նրա մեջ: Քաշվեց մի անկյուն, սկսեց լաց լինել: Բա ի՞նչ աներ, որ լաց չլիներ, այդքան տգեղ, հետևաբար դժբախտ աղջիկ էր:

Տատը չի նկատում, որ նա լաց է լինում, թե չէ խրատելը կհետաձգեր ավելի հարմար ժամանակի:

— Քեզ դուր կգա՞ր, եթե բոլոր մարդիկ քեզ նըման լինեին և վարվեին քեզ հետ այնպես, ինչպես դու ես վարվում բոլորի հետ, հապա մի պատկերացրու՛...

Տատի ասածը պատկերացնել նա չի փորձում: Տատի ասածի պես ուղղակի լինում է: Մի չար կախարդի հրամանով աշխարհը կախարդվում է: Իսկ նրա շուրջը, բոլորը, թե՛ տանը, թե՛ դրսում, թե՛ ծանոթ, թե՛ անծանոթ, նախ անասելի տգեղանում են: Այդ էլ քիչ էր, դառնում են անասելի չար ու կոպիտ: Բան է հարցնում, կա՛մ չեն պատասխանում, կա՛մ այնպիսի ձայնով, որ ավելի լավ է չլսել: Իսկ երբ նայում են, աչքերը կարիճներ դառած, կարիճային հայացքով կծում են:

Ինչպե՞ս ապրեր նա այս տանը, այս քաղաքում, այս աշխարհում, ուր բոլորն այդպես տգեղացել էին քիչ է, իրեն էլ ատում էին: Եվ նա գլուխն առավ ու փախավ: Գնա՜ց, գնա՜ց, շատ գնաց թե քիչ, չհասկացավ: Մեկ էլ հասավ մի անտառ:

Այստեղ էլ նույն բանը:

Ծառի ճյուղին նստած թռչունը նայում է նրան թե չէ, աչքերը իսկույն կարիճանման են դառնում և հայացքը խայթում է նրան: Նապաստակ, աղվես է պատահում՝ նույնպես: Արջ է պատահում, գայլ է պատահում, նույնիսկ առյուծ է պատահում, չեն հարձակվում նրա վրա, որ հոշոտեն, նայում են, կարիճանման աչքերով խայթում:

Այստեղ նույնիսկ ծաղիկների աչքերն են կարիճանման, մռայլ նայում են, իրենց վարսանդը կարիճի խայթի նման ուղղում նրան:

Նա ուզում է այստեղից էլ փախչել: Բայց ու՞ր և ինչպե՞ս, որ կողմ նայում է՝ չարացած հայացքներով խայթում են: Այս կողմ է վազում, այն կողմ է վազում, որ դուրս գա անտառից, ճանապարհ չի գտնում:

Վերջապես նրա դեմն է ելնում մի տատիկ:

— Տատի՜կ,— լալով տատիկի առաջն է վազում աղջիկը,— օգնի՛ր ինձ այստեղից դուրս գալ:

— Ես քեզ չեմ կարող օգնել,— ասում է տատիկն ու չի նայում նրան երևի, որպեսզի հայացքով չկծի,— դու չես կարող այստեղից դուրս գալ, քանի դեռ նրանք՝ բոլոր այս թռչունները, կենդանիները, գազանները, ծառ ու ծաղիկ, նայում են քեզ այդպիսի աչքերով:

— Հապա ի՞նչ անեմ, որ նրանք ինձ այդպես չնայեն:

— Մի՛ ճանապարհ կա միայն, բայց շատ դժվար:

— Ցու՛յց տուր, ինչքան էլ ուզում է դժվար լինի:

— Դու պետք է գեղեցկանաս:

— Ի՞նչ... գժվե՞լ ես, տատի՛կ,— չարացավ աղջիկը, որ նա իր տգեղ լինելը հիշեցրեց:



digitised by A.R.A.R.@



— Մինչև չգեղեցկանաս, նրանք քեզ բաց չեն թողնի։

— Ես տգեղ եմ ծնվել, ինչպե՞ս գեղեցկանամ,— հեկեկում է աղջիկը։

— Լացը քեզ չի օգնի,— չոր ձայնով ասում է տատիկը,— պետք է գեղեցկանաս։ Իսկ թե ինչպե՛ս, այդ գաղտնիքը քեզ կասեմ։

— Ա՜խ, տատի՛կ ջան, ո՞վ կուզի, որ ինքը տգեղ լինի։

— Նա, ով իր ուսերին բեռ տանել չի սիրում։

— Ինչպիսի ծանր բեռ ասես, կառնեմ ուսերիս, միայն թե գեղեցկանամ։ Միայն դու ինձ ասա այդ բեռի անունն ու տեղը, տատի՛կ ջան։

— Այդ քո իմացած բեռներից չի։ Նա իսկապես շատ ծանր է, բայց ասեմ նաև, որ միայն սկզբից, այնքան ժամանակ, քանի դեռ դու այդ կկրես իբրև օտար մի բան, հետո նա կդառնա քոնը՝ ինչպես քո մազերը, քո աչքերը, քո շրթունքները, այսինքն՝ քեզ հետ ծնված, և դու նրա ծանրությունն այլևս չես զգա։

— Դե ասա՛, տատի՛կ ջան, շու՜տ ասա...

— Ահա թե ինչ. շարունակի՛ր ճանապարհդ, բայց ժպտալով, սիրալիր ողջունի՛ր քեզ հանդիպող ծառերին, ծաղկին, ամեն հավքի ու գազանի։ Չհուսահատվես, երբ շուրջդ փոփոխություն չտեսնես կամ վատ լինի փոփոխությունը։ Ժպտալով շարունակիր ճանապարհդ, այնքան, մինչև որ ժպիտ տեսնես նաև քեզ նայող աչքերում։ Այդ կնշանակի, որ դու արդեն գեղեցկացել ես և ճամփան էլ քո առջև բաց է, գնա՛, ուր ուզում ես։

Օ՜, իսկապես դա շատ ծանր բան էր՝ ժպտալ, երբ բոլորովին էլ չես ուզում ժպտալ, սիրալիր ողջունել, երբ չես ուզում ողջունել, ուր մնաց թե՝ սիրալիր։

Նրա ժպիտը կեղծ էր ստացվում և նայողներին ավելի էր բարկացնում այդ։ Բայց նա չհուսահատվեց և գնալով, գնալով, ինքն էլ չհասկացավ, թե ինչպես ժպիտը դարձավ ինքնաբուխ։ Նա պատահողին անկեղծորեն ողջունում էր, և այնքան սիրալիր, որ արջի ճարպոտ աչքերում էլ ժպիտ խաղաց նրա ժպիտին հանդիպելով, փագրն ու առյուծը դադարեցին մռնչալ, այլ միայն մռռում էին, ինչպես հաճույքից կատուն է մռռում, երբ նրա ականջների տակը քորում ես։

Այդպես ժպտալով, այլևս ոչ թե հարկադրաբար, այլ՝ անզուսպ հրճվանքով, նա դուրս եկավ տարօրինակ անտառից, նորից մտավ քաղաքի ծանոթ փողոցները։ Եվ թեև այլևս կարծես թե դրա կարիքը չկար, բայց նա շարունակում էր ժպտալ, որովհետև չէր կարողանում չժպտալ։ Դա մի այնպիսի վարակիչ ժպիտ էր, որ համակում էր հանդիպողին, երբ նույնիսկ նա տանը հիվանդ ուներ ու մռայլ էր, կամ ինքն էր իրեն վատ զգում, կամ գործերն էին վատ։

— Այս ի՜նչ գեղեցիկ աղջիկ է...— շշնջում էին նրա հետևից։

Այդպես ժպտալով նա տուն մտավ, կարոտով ժպտաց տանեցիններին։ Իսկ նրանք հիացմունքից քար կտրեցին։

— Ինչպե՜ս ես գեղեցկացել...

Սենյակում դեռ զգացվում էր տատի եփած ճաշի բուրմունքը, ի՜նչ գրգռիչ բուրմունք։

Նրա աչքն ընկավ անկյունում դրված իր կոշիկներին, որ այսօր առել էր մայրը, ինչքա՜ն գեղեցիկ էին։ Ինչպե՞ս անմիջապես չէր նկատել։

Եվ առհասարակ ինչքան գեղեցիկ էին բոլորը և շուրջն ամեն ինչ, ամբողջ աշխարհը։

Նա հիացած ժպտում էր, մի ժպիտով, որն արդեն իրենն էր, ինչպես իր մազերը, իր աչքերը, իր շրթունքները, իր հետ ծնված, իրենից անբաժան։

Դուք իմացա՞ք գեղեցիկ լինելու գաղտնիքը։ Մնացածն արդեն ձեր գործն է։

digitised by A.R.A.R.@

# ՋԱՐՄԱՅՐ՝ ՀԵՐԵՏԻԿՈՍ ՊԱՎԼԻԿՅԱՆ

ՀՈՎՀԱՆՆԵՍ ՂՈՒԿԱՍՅԱՆ

Նկ. ԳՐԻԳՈՐ ԽԱՆՋՅԱՆԻ

Անանիկը ծնոտը հենած իր մանկական բռունցքներին, որքան սարսափով, այնքան էլ զարմանքով լսում էր իր հորեղբայր Գնել վանահոր և ոտքից-գլուխ սպառազեն. զորականի խոսակցությունը։ Զորականը Անիից Հոռոմոսի վանքն էր հասել այն տարօրինակ հերետիկոսին տանելու, որը երկրորդ օրն էր, ինչ նետված էր վանքի խոնավ նկուղներից մեկը։

Նրանք նստած էին ժայռոտ դարավանդի վրա գտնվող կիսախավար մի խցում, որի տակ, հատկապես գիշերով, այնպես դիվային մռմռնչով թավալվում էր Ախուրյանը։

Այժմ ցերեկ էր, համարյա կեսօր։ Սովորաբար, այս ժամերին Անանիկը - հորեղբոր առջև չոքած՝ հեգելով կարդում էր Եզնիկ Կողբացու «Եղծ աղանդոց»-ը, հետո բարձ տախտակի վրա, թվաբանության մեջ այնքան էլ չփայլող հորեղբոր հետ քննելով աշխատում էր լուծել Անանիա Շիրակացու թվաբանական վարժություններից մեկը կամ երկուսը։ Բայց, ահա, այս երկրորդ օրն էր, որ հորեղբայրը ասես մոռացություն էր տվել իրեն։ Այդպես հաճախ էր պատահում, երբ ուխտավորներ էին գալիս Հոռոմոս։ Կերուխումի սիրահար հորեղբայրը հատկապես սիրում էր ժամերով սեղան նստել Անիից հյուր եկած և կամ որսի ելած տոհմիկ իշխանների հետ, որոնք մի քանի ժամով կանգ էին առնում վանքում։

Այդպիսին էր երևում և այս մեկը, որի պղնձյա վահանի վրա փորագրված արծիվը ցույց էր տալիս, որ նա պատկանում է Բագրատունյաց իշխանական տան պահակազնդին։ Բայց այս անգամ Անանիկը զգում էր, որ հորեղբայրը սեղան էր նստել ոչ թե կերուխումի, նրան հետաքրքրում էր ոչ թե «դրսի աշխարհից» եկած զորականը, այլ՝ նկուղ նետված այն տարօրինակ կալանավորը, որի մասին նա խոսում էր խորին զայրույթով և սաստիկ մտահոգությամբ։

Եվ, իսկապես, սարսափելի էր նրա մասին լսելը…

Կալանավորը Պավլիկյան աղանդից էր, մեկն այն հերետիկոսներից, որոնց մասին մինչ այդ, Եզնիկ Կողբացու «Եղծ աղանդոց»-ը բացատրելիս, սարսափելի բաներ էր պատմել Գնել հորեղբայրը։ Նա նմանության բազմաթիվ օրինակներ էր բերել՝ նրանց ու պարսիկ աշխարհակալների միջև, որոնք դեռ չորս հարյուր տարի առաջ քրիստոնեությունը Հայաստանում հալածելով՝ ձգտում էին իրենց մեջ ձուլել Հայկա ցեղը. «Պարսիկները,—ասում էր Գնել հորեղբայրը,—դեռ օտարներ էին և նրանց ցանկությունը՝ հույժ հասկանալի, բայց ի՞նչ ասել սրանց, որ հայեր են, Թորգոմյան ազգից, և պայքարում են հայոց եկեղեցու և հաստ ու կենտ մնացած փոքրիկ իշխանությունների դեմ, երբ Հայաստանը առանց այն էլ գտնվում է արաբական գերիշխանության տակ»։

Անանիկը պաշտում էր Հայաստան աշխարհը. Գնել հորեղբոր խոսքերը բորբոքում էին նրա սրտում հայրենիքի սերը։ Եվ նա անզուսպ ատելություն զգալով դեպի Պավլիկյանները, երազում էր այն օրը, երբ, ինչպես հորեղբայրն էր ասում, այդ հայրենադավ հերետիկոսների հետ մայր հողից դուրս կնետվեր և արաբական վերջին հեծյալն ու երկիրը կդառնար ազատ Հայաստան։

Դեռ Անիում, և հենց այստեղ Հոռոմոսում, նա արդեն երրորդ տարին էր, ինչ տեսնում էր արաբ հարկահաններին, որոնք տանում էին վանքապատկան կալվածքների բերքի կեսից ավելին։ Եվ ահա, ինչքա՞ն ցավալի և սոսկալի էր լսել, որ այն



ժամանակ, երբ Հյուսիսային Հայաստանը, Վասպուրականն ու Տարոնը ձգտում են ազատագրվել արաբական լծից, այդ հերետիկոս Պավլիկյանները խռովություն են սերմանում ազգի մեջ և ռամիկներին քարոզում՝ ոտքի ելնել իրենց արյունակից տերերի դեմ։

Անանիկը պատկերացնում էր նրանց ամբողջովին բրդով պատած, այծի գլխով, սուր կոտոշնե-



digitised by A.R.A.R.@

բով ու պոչով, այնպես ինչպես նա տեսել էր վանքի մագաղաթյա մատյաններում նկարված դևերին, որոնց իր սուր նիզակով հալածում էր Գաբրիել հրեշտակապետը:

Սակայն մինչև այժմ Անանիկը չէր տեսել նրանցից և ոչ մեկին, որովհետև, ինչպես հորեղբայրն էր ասում, այդ «դիվական հերետիկոսները» Բագրատունյաց տնից չէին համարձակվում ոտք դնել Հյուսիսային Հայաստան: Եվ ահա հանկարծ նրանցից մեկը անցել է ամբողջ Հայքը, Ապահունիքը, Բագրևանդը և բռնվել Արշարունիք գավառում; Անիից ոչ շատ հեռու գտնվող Մրեն գյուղի կալերում քարոզելիս...

«Ինչպե՞ս է կտրել նա այդ գավառները. մենակ, գիշերով,—մտածում էր Անանիկը,—նա երևի թռել է մթնած երկնքով, հենց այն սոսկալի պահերին, երբ Ախուրյանը այնպես գիշերային մրմունջով թափվում է վանքի պարիսպների տակ»...

Զարմանալի էր այդ մասին մտածելն անգամ,



և այժմ, լսելով հորեղբայր Գնելին ու զորականին, Անանիկն զգում էր, որ նրանք իրավունք ունեին այդպես մտահոգվելու և զայրույթով լցվելու այդ «ագռավաթև, պոչավոր ու այծագլուխ հերետիկոսի» դեմ: Սակայն... այդ ինչքան որ սարսափելի է, այնքան էլ՝ զարմանալի...

Այո, զարմանալի՜:

Դեռ երեկվանից մինչև հիմա, մինչև Հոռոմոս կհասներ Անիից կանչված զորականը, Անանիկը մի քանի անգամ գնացել էր գոմի հետևից, նկուղի դռան ճեղքից, դիտելու այդ դիվական արարածին և, մթության մեջ ոչինչ չտեսնելով, լսել էր նրա ձայնը:

Մի՞թե դևերն այդպիսի բարձր ձայն են ունենում, մի՞թե ագռավաթև ու բրդոտ այդ այծագլուխները կարող են մարդու պես երգել, և այն էլ այնպես բարձր ու ոլորուն, ինչպես շարականները Հայոց եկեղեցու: Նա նույնիսկ ավելի լավ էր երգում, ճիշտ է, քիչ խռպոտ, սակայն այնպես թախծալի ու անուշ, ինչպես վանքի հովիվ Համբիկի շվու ձայնը...

«Գուցե նա խաբո՞ւմ է իր այդ բարձր ձայնով ու մոլորեցնում»,—մտածում էր Անանիկը:

«Է՜, թող երգի, ինչքան կուզե, նա ինձ չի կարող մոլորեցնել, և հետո, չէ՞ որ նա երկար չի մնալու վանքի նկուղում. ահա, արդեն եկել է զորականը, և նրան երևի հենց այսօր կտանեն Անի կամ Ամբերդ, որ վե՜րջ նրան, վե՜րջ... Սակայն զարմանալի է, ինչպե՞ս է նա այդպես երգում... զարմանալի է...»

— Զարմանալի՜ է, զորակա՛ն, զարմանալի՜ է,—ասում էր Գնել հորեղբայրը հենց այդ պահին,—ինչո՞ւ պիտի աստծուն ոչ հաճելի այդ բաները հենց մեր միջից ծնվեն, մեր աշխարհում լինեն... այս երկու հարյուր տարի է, որ այդ հերետիկոսները հագարացիներից ոչ պակաս քանդեցին մեր աշխարհը...

— Ես շատ բան գիտեմ նրանց մասին,—գառան բուդը ախորժակով կրծելով՝ ասում էր զորակա-

նր,—բայց... մի բան չեմ հասկանում, թե... ինչո՞ւ են այդ ճերմակիկներին Պավլիկյաններ կոչում:

— Որպես թե Պողոս առաքյալին են հետևում,—քմծիծաղով վրա տվեց Դինել վանահայրը,—բայց, տեր, նրանք ի՞նչ կապ ունեն Քրիստոսի այդ սուրբ աշակերտի հետ: Այդ գեհենից ծնունդները ասում են, որ աշխարհը իբր թե ստեղծել է չարության աստվածը և, որ նա է իշխում աշխարհում, իսկ երկնքում բարության աստվածը...

— Հը՛, հը՛,—կրծելով կրկնում էր զորականը,—չարությա՞ն աստված... բարությա՞ն աստված...

— Համարյա,—շարունակում էր վանահայրը,—այս ճերմակիկների ասելով, ուրեմն մարդիկ պետք է պայքարեն չարության դեմ, այսինքն... մեր դեմ, հասկանո՞ւմ ես, զորակա՛ն, եկեղեցու ծառաների և իշխանաց դեմ, որպես թե մենք ենք բոլոր չարյաց պատճառը:

—Հը՛, հը՛,—գինին կում-կում խմելով՝ կրկնում էր զորականը,—մե՞ր ու ձե՞ր դեմ...

— Որպեսզի, ըստ այդ անօրենների, երկրո՛ւմ էլ իշխե բարությունը ու իրենք էլ հավասարապես կարողանան օգտվել երկրի բարիքներից...

— Հը՞մ,—մի մեծ պատառ ատամներով պոկ տալով՝ գլուխն օրորեց զորականը:

— Հարյուր տարի առաջ մենք հազիվ կարողացանք այդ ճերմակիկներին դուրս քշել մեր աշխարհի հյուսիսային և կենտրոնական նահանգներից,—նորից խոսեց վանահայրը,—բայց տե՛ս, որ գեհենից ծնունդները նորից հիշել են մեր կողմերը: Տեսնես, ի՞նչ նպատակներ ունեն...

— Նպատակը մեզ ու ձեզ ջարդելն է,—պատասխանեց զորականը՝ երկու կտոր անելով գառան կուրծքը,—հիմա նրանք Բյուզանդիայի հոգին են հանում:

— Ի՞նչ ես ասում...

— Միացել են հույն և այլազգի անօրեններին և բազմաթիվ բերդեր ու ամրոցներ են կառուցել, նույնիսկ՝ մի մեծ քաղաք:

— Որտե՞ղ է գտնվում չարյաց այդ բույնը...

— Եփրատի ափին:

— Հեռո՞ւ է այդ վայրը,—հարցրեց վանահայրը ճակատը կնճռոտելով:

Անանիկը լարեց ուշադրությունը. նրան էլ, ոչ պակաս, քան հորեղբայր Դինելին, հետաքրքրում էր այդ վայրը, որովհետև վանահայրը, ինչպես Անանիա Շիրակացու թվաբանությունից, այնպես էլ «Աշխարհացույց»-ից ոչինչ չէր հասկանում և իրեն սովորեցնում էր Պտղոմեոսի՝ Հայաստանի պարզ և ոչ ճիշտ քարտեզի վրա, որ գծված էր մոտ 700 տարի առաջ, 150-ական թվականներին:

— Փոքր Հայքում,—պատասխանեց զորականը,—ես անցել եմ այդ վայրերով, երբ սպարապետ Սմբատ Բագրատունու նամակն էի տանում Բյուզանդիոն Միքայել երկրորդ կայսրին. այդ ճերմակիկների քաղաքի անունն էլ Տերիկ է:



— Տերի՞կ,—բացականչեց վանահայրը, երբ Անանիկն էլ զարմանքից թարթում էր աչքերը,—Տերի՞կ... խաղական անուն է. դե, պարզ է, որ դիվաց բույնը Տերիկ էլ պիտի կոչվեր:

— Ամո՞ւր եք շղթայել,—հանկարծ հարցրեց զորականը:

— Շղթա՞,—ինքնագոհ քմծիծաղ տվեց վանահայրը,—ոտքերն էլ կոճղի մեջ ենք դրել:

— Ուրեմն՝ չի՞ փախչի:

— Ո՞րտեղից,—ծիծաղեց վանահայրը:

— Զարմանում է...—ասաց զորականը,—ռամիկների վրա չի կարելի հույս դնել. չէ՞ որ այդ ճերմակիկները հենց ռամիկների անունից են խոսում:

— Հանգի՛ստ եղեք, Հոռոմոսում այդպիսի ռամիկներ չկան և, եթե լինեն էլ, շատ լավ գիտեն, թե ինչ է սպասում իրենց: Դեռ հարյուր տարի առաջ հոգելույս Հովհան Օձնեցի կաթողիկոսը ի լուր աշխարհի ժողով հրավիրեց Դվինում, որ ովքեր կօգնեն և կամ շփում կունենան Պավլիկյանների հետ՝ մահվան կդատապարտվեն: Դուք, հիարկե, սրան երկար չեք պահի,—ավելացրեց նա հարցական նայելով զորականի՝ գինուց մշուշված աչքերին:

— Առավոտ շուտ կտանեմ Անի, և վերջ,—ասաց զորականը և իր լայն ձեռքը գոտուց կախված կացնի դաստակին դնելով՝ ավելացրեց.—Սա հազարական ութ գլուխ է թռցրել, ես չեմ կարծում, որ նրա վիզը հազարացու վզից հաստ լինի:

— Օխ-օ՜խ,—հառաչեց վանահայրը, այժմ միայն նկատելով կացնի բերանի վրա չորացած արյունը,—հայի ծնունդ լինես և հոգին սատանային



digitised by A.R.A.R.@

ծախես, իշխան ու եկեղեցի չճանաչե՞ս... Զարմանալի է, զարմանալի՜, աստված արդար, չես հասկանում, թե ի՞նչ են ուզում...

Ամառային երեկոն իջել էր Հռոմոսի վրա, երբ Անանիկը մոտեցավ նկուղի դռանը: Դա ժայռի մեջ փորված մի փոքրիկ տարածություն էր, որտեղ շղթայի էին զարկվում անհնազանդության մեջ մեղադրվող վանականները ու որտեղ դեռ մի քանի ամիս առաջ, նախքան Եղնախաղ լեռների մեջ քաշվելը, տառապում էր սիրո երգեր հորինող «սատանաներից մոլորված» Հովհաննես աբեղան:

Նկուղը երեք կողմից կախված էր անդունդի վրա, իսկ դեպի այնտեղ տանող դժվարանցնելի միակ արահետի տակ գայլխեղդ գամփռներով շրջապատված շտեմարաններն էին, որոնցից ցած, այդ ելուստանման բարձունքի շեմքի վրա, իշխում էր Հռոմոսի վանքը: Վարը՝ մայրամուտի կարմիր ճառագայթներից ասես արյունոտված,



խուլ վշշոցով հոսում էր Ախուրյանը, իսկ շրջապատի դեղնած, մամռապատ բլուրների վրա, թվում էր, թե մաշված ու գունաթափ շուրջառներ էին փռել:

Ոչ այնքան իրիկնային սառը քամուց, որքան հորեղբայր Գնելի և այժմ ուխտավորների խցերից մեկում խռմփացող զորականի պատմածներից սարսռելով, ամբողջովին լսողություն դարձած Անանիկը ականջը մոտեցրեց ժայռի մեջ նստած անտաշ դռնակի ճեղքին:

Նկուղը լուռ էր գերեզմանի պես. դռնակի ճեղքից փչող խոնավ բորբոսահոտն ու ժայռերի մեջ չորացող, անդունդի վրա կախված անխոտի թփերի խշխշոցը թեև սոսկալի պատկերներ էին ստեղծում նրա բորբոքված երևակայության մեջ, սակայն, երկար տատանումներից հետո, կալանավորի երգը մի անգամ ևս լսելու անդիմադրելի ցանկությունը նրան գամում էր իր տեղում: Քամին փսփսացնում էր մինչև ուսերն իջնող նրա երկար գիսակներն ու կապույտ բաթանի պարեգոտը: Իջնում էր մութը, շրջակա բլուրներն ասես հետզհետե ձուլվում էին իրար, իսկ նա դեռ սպասում էր:

— Էհե՜յ դու, էհե՜յ...— սպասելուց հոգնած՝ հանկարծ բացականչեց նա, ցնցելով ժանգոտած նիգը:

Թվաց, թե ներսից ինչ-որ զնգզնգոց լսվեց. թե՞ նիգի ձայնն էր:

— Էհե՜յ դու, էհե՜յ... չե՞ս լսում...— կրկնեց Անանիկը՝ այս անգամ արդեն ինքն իր ձայնից սրտապնդված:

Ներսում, այս անգամ իսկապես շղթաների շառաչ լսվեց, հետո, ասես գերեզմանի խորքից եկող, թախծոտ ու հոգնած մի ձայն.

— Ի՞նչ է...

— Ինչո՞ւ չես երգում,—ինքն էլ չիմացավ, թե ինչպես, այժմ առանց քինի ու զայրույթի, կոտրված ձայնով ասաց Անանիկը:

Պատասխան չեղավ. բայց Անանիկին թվաց, թե կալանավորը ինչ-որ զարմանքով ու բարեհոգությամբ քմծիծաղ տվեց:

— Չե՞ս լսում, ի՞նչ է,—կրկնեց նա՝ այս անգամ արդեն բավականին խիստ ու պահանջկոտ ձայնով:

— Իսկ ո՞վ ես դու,—հարցրեց կալանավորը:

— Ե՞ս... ես Անանիկն եմ,—հպարտ, որ վերջապես խոսեցրեց կալանավորին,—ասաց Անանիկը,—վանահայր Գնելի եղբորորդին. չկարծես, թե ես վախենում եմ քեզնից. ես արդեն տասներկու տարեկան եմ:

— Իսկ քո ինչի՞ն է պետք իմ երգը,—ծիծաղելով հարցրեց կալանավորը:

— Իսկի էլ մի՛ ծիծաղիր,—խիստ ձայնով վրա տվեց Անանիկը,—ինձ ամենևին էլ պետք չի՛ քո երգը. ես գիտեմ, որ դու սատանա ես և քո նման-



digitised by A.R.A.R.@

ներն էին մոլորեցրել Հովհաննես արեղային, որ սիրո երգեր էր հորինում։

— Քեզ ո՞վ է ասել, որ սիրո երգեր հորինելը սատանայի բան է,— ծիծաղելով հարցրեց կալանավորը։

— Գնել հորեղբայրս... իսկ դու մի՛ ծիծաղիր. ես գիտեմ, որ դու էլ սատանա ես և կոտոշներ ունես և պոչ... և ագռավի թևեր... Բա՜, քեզ թվում է, որ քո երգով ի՞նձ էլ կմոլորեցնես։

— Է՜, որ չես ուզում, չեմ երգի,— բարեհոգի ծիծաղով ասաց կալանավորը,— դու ինձ ասա՛, դրսում լո՞ւյս է։

— Սատանայի ինչի՞ն է պետք լույսը,— քմծիծաղ տվեց Անանիկը,— գիշեր է։

— Քաջն ես երևում. որ այս մթանը չես վախենում,— ասաց կալանավորը՝ շարունակելով ծիծաղել։

— Դու մի՛ ծիծաղիր. ես նույնիսկ կգլխատե՜մ քեզ. դու Պավլիկյա՞ն ես։

— Իսկ դու գիտե՞ս ինչ բան է Պավլիկյանը,— այժմ արդեն նկատելի թախծանքով հարցրեց կալանավորը։

— Ինչպե՞ս չգիտեմ,— հեգնանքով վրա բերեց Անանիկը,— դուք հրկիզում եք եկեղեցիները, դուք քանդում եք ամրոցները... Զարմանալի է, ի՜նչ եք ուզում, ի՜նչ,— կրկնեց նա ոչ պակաս զայրույթով, հիշելով Գնել հորեղբոր խոսքերը։

— Արդարություն,— թախծալի պատասխանեց կալանավորը։

— Արդարությո՞ւն,— քմծիծաղ տվեց Անանիկը,— այդ ի՞նչ արդարություն է, երբ դուք սպանում եք վանականներին ու իշխաններին...

— Որովհետև նրանք մտածում են միայն իրենց մասին, իսկ ռամիկը քաղցած է, փոքրի՛կս. մի՞թե չես տեսնում, որ ռամիկը տանջվում է օրն ի բուն...

— Որովհետև հագարացիք են տանում նրանց բերքերը...

— Եվ վանականներն ու իշխանները. չէ՞ որ նրանք լավ են ապրում. մի՞թե վատ է ապրում հորեղբայրդ, որ վանահայր է։

Անանիկը խոսք չգտավ պատասխանելու. նա զգաց, որ ինչ-որ ճշմարտություն կար այդ հերետիկոսի ասածում. չէ՞ որ հենց այդ էր ասում և վանքի հովիվ Համբիկը, որ սատանա չէ, այլ իսկական մարդ, ինչպես ինքը՝ Անանիկը... Նա հիշեց, թե ինչպես, հենց այսօր, հորեղբայրն ու զորականը խմեցին երեք փարչ գինի և կերան մի ամբողջ գառնուկ։

— Լա՜վ, քո եկեղեցիներն ու ամրոցներն ինչո՞ւ ես քանդում...

— Որովհետև այնտեղ են ամրացել վանականներն ու իշխանները։

— Բայց չէ՞ որ դրանք մեր պաշտպաններն են հագարացոց դիմաց,— վրա տվեց Անանիկը՝ հիշելով հորեղբոր խոսքերը. հպարտ, որ արդեն նեղն է գցում կալանավորին։

— Իշխանաց և վանականների համար,— դառնորեն ասաց կալանավորը,— արհավիրքի ժամանակ, փոքրիկս, ռամիկը մնում է բաց դաշտում, թշնամու սրի կոխան...



— Եթե ռամիկներն էլ այնտեղ ապաստանեին, չէի՞ք ամեքի...

— Ինա՜րկե ոչ։

— ...Իսկ դու... դու կսպանե՞ս հագարացիներին...

— Կսպանեմ. բայց մինչ այդ ինձ պիտի սպանեն,— խոր հոգոց հանելով՝ ասաց կալանավորը։

Կալանավորի վերջին խոսքերից այս անգամ ճմլվեց Անանիկի սիրտը, և նա ամբողջ սրտով խղճաց նրան։

— Ուրեմն... դու սատանա չե՞ս... դու հա՞յ ես,— այնուամենայնիվ, դեռևս կասկածանքով հարցրեց նա։

— Հայ եմ... Սալնո ձորերից...

— Որտե՞ղ են այդ ձորերը։

— Սասունում,— հառաչեց կալանավորը և շղթաները խուլ շառաչեցին։

— Ինչպե՞ս է անունդ...

— Զարմայր։

— Դա մեր առաջին նահապետի անունն է,— ասաց Անանիկը,— ես գիտեմ Զարմայր նահապետի մասին. դու է՞լ այնպես հսկա ես, ինչպես Զարմայր նահապետը։

Կալանավորը բարեսրտորեն ժպտաց.

— Ասում են,— պատասխանեց նա,— դե, վաղն առավոտ ինձ Անի տանելիս կտեսնես... միայն Օհանիկս չի տեսնի...



digitised by A.R.A.R.@



— Ո՞վ է այդ Օհանիկը:

— Որդի՜ս. նա էլ քո տարիքին է... ես նրա համար դահուկներ էի խոստացել... Նա շատ լավ սահում է... Մեզ մոտ շատ են ձյունապատ լեռները... Ոչինչ, երբ մեծանա, նա կվերցնի իմ դահուկները:

Անանիկի սիրտը կարեկցանքից կուչ եկավ.

— Ուրեմն դո՞ւ էլ ես դահուկներով սահում...

— Սասունում բոլորն են սահում...

— Դու և լավ երգում ես... քո երգը այնքան նման է Համբիկի շվու ձայնին... Համբիկը մեր վանքի հովիվն է և այնքա՜ն լա՜վ է շվի ածում...

— Դու շա՞տ ես սիրում երգը...

— Շա՜տ...

— Լա՛վ, դե որ այդպես է, ես հիմա կերգեմ քեզ համար, որ դու ինձ միշտ հիշես... Թախծալի ձայնով ասաց կապանավորը,—ուզո՞ւմ ես երգեմ:

— Երգի՛ր...—դուռը սեղմելով շշնջաց Անանիկը:

Եվ կապանավորը սկսեց երգել...

Եվ այնքա՜ն տխուր, այնքա՜ն թախծալի էր նրա երգը, որ քիչ հետո Անանիկը սառած բռունցքներով սրբում էր իր տաք արցունքները: Նա լալիս էր կապանավորի համար, որ պիտի գլխատվեր, լալիս էր, որ նա էլ չէր կարող հարազատներին տեսնել, որովհետև պիտի գլխատվեր, լալիս էր Համբիկի շվու երգը հիշեցնող օրն ի բուն տանջվող ռամիկի գանգատի և այն հեռավոր տղայի՝ Օհանիկի համար, որ էլ չէր տեսնելու իր հայրիկին...

Հետո, երբ երգը լռեց, նրանք դեռ էլի լռեցին, կապանավորը պատմեց նրան իր և իր բախտակից ռամիկների դառն տառապանքների մասին և էլի պատմեց Օհանիկի մասին, և Անանիկը լսում էր այդ բոլորը և սառած բռունցքներով սրբում իր տաք արցունքները...

Կես գիշեր էր արդեն. ամպերի տակ սահող լուսնի շողերը երբեմն փայլատակում էին Հառոմոսի ջրերի և անդունդի վրա կախված ժայռերի վրա, երբ Անանիկը ամենայն զգուշությամբ, հորեղբոր խցից վերցնելով նկուղի և կապանավորի բազուկները շղթայող փականքների բանալիները, նորից հայտնվեց ժայռոտ արահետի վրա:

Շնարանի մոտով անցնելիս զամփռները միայն սիրալիր կաղկանձեցին, որովհետև Անանիկը հաճախ էր կերակրում նրանց: Իսկ երբ մոմը վառեց, նրան թվաց, որ մինչև ուսերն իջած գզգզված մազերով, մաշված կրծքին փռված լայն մորուքով, արծվաքիթ ու խոշոր աչքերով այդ շղթայված հսկան ոչ թե Զարմայրն է, իր նոր, ժպտախոս բարեկամը, այլ՝ Արտավազդը. Մասիսի վիհի մեջ շղթայված անմահ Արտավազդը, որ շղթաներից ազատվելուց հետո կջախջախի իրեն, զայրույթից կավերի ամբողջ վանքը՝ Հառոմոսը, Հայաստան աշխարհը...

Սակայն այդ բոլորը անմիջապես ցնդեցին՝ այնքա՜ն լավն էր Զարմայրը, և կիսալուսնաձև [illegible] ունեցող նրա ճակատը՝ այնքան [illegible] և ժպիտը՝ այնքան բարի...

Առավոտյան, սարսափի մեջ էր ամբողջ Հառոմոսը: Անիից եկած զորականը, ձեռքը կացնի դաստակին, ոչ պակաս զարհուրանքով նայում էր



digitised by A.R.A.R.@

նկուղի ժայռեղեն պատից կախ ընկած շղթաներին, իսկ նրա կողքին բարացած Գինել վանահայրը խաչակնքում էր անընդհատ և աղոթքներ մրմնջում։

Անցավ 17 տարի։ 851 թվականի ձմռանը, երբ Սասնա գյուղացիները Խութեցի Հովնանի գլխավորությամբ վերջին հարվածներն էին տալիս հազարացի նվաճողներին և գրավում Մուշ քաղաքը, սասունցի ռազմիկներից մեկը աշխենաճարելով ապանից եկեղեցու գմբեթի տակ ապաստանած թշնամու զորահրամանատար Յուսուֆ Արուսթին և կացնի մի հարվածով թռցրեց նրա գլուխը, որ թավալգլոր ընկավ գավթի տակ։

Այդ ժամանակ հայ ապստամբներին օգնության հասած Բագրատունյաց հեծյալներից մեկը, մի երիտասարդ զորական, որ գտնվում էր գավթի մոտ, զարմանքից ու հիացմունքից շողացող դեմքով ընդառաջ գնաց գմբեթից իջնող սասունցի ռազմիկին։

— Դու... դու եղե՞լ ես Հոռոմոսում, — բացականչեց զորականը՝ նայելով սասունցու արդեն ակոսված մազերի տակից շողացող ճակատի սպիին։

— Եղել եմ, — հևալով պատասխանեց սասունցին՝ աշխատելով հիշել երիտասարդի դիմագծերը։

— Դո՛ւ... դու Զարմայրը չե՞ս...

— Զարմայրն եմ...

— Ես... ես... ես Անանի՜կն եմ...

Սասունցին դեն նետելով կացինը՝ կրծքին սեղմեց երիտասարդին։

— Ո՞վ է, բաբո՛, ո՞վ է, — Անանիկի կրծքին փարված ակոր սասունցուն դարձավ մի երիտասարդ ռամիկ ապստամբ, որի լայն թիկունքից կախված էին եղջերվի կաշվով պատած դեռևս ձյունոտ կարճ դահուկները։

— Անանի՜կն է, լաո՛, Անանի՜կը, — հեկեկալով պատասխանեց սասունցին, — նա, որ ինձ փրկեց հայու կացնին...

Քիչ հետո, երբ ազատագրված Մուշը տոնում էր իր հաղթանակը, Անանիկն ու Օհանիկը, ուս-ուսի, զարեզով լի բարև զուռնի տակ լսում էին Զարմայրի նոր երգը...

Դա ռազմական այն երգերից մեկն էր, որոնց հիման վրա, շուտով, շատ շուտով պիտի ստեղծվեր «Սասնա Դավթի» անման էպոսը...




ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

Նկ. ԷԼԵՆԱ ՏԵՐ-ԱՎԱԳՅԱՆԻ

— Ունեմ ներկեր ու վրձին,
Կնկարեմ, մայրի՛կ, քեզ,
Եթե անշարժ քո բարձին
Հենվես հանգիստ ու նայես։—
Մայրս նստեց ու ժպտաց.
— Դե, քե՛զ տեսնեմ, ի՛մ անգին։—
Բայց քիչ հետո նա ասաց.
— Վա՜յ, գործերս մնացին։—
Թողած վրձինը ձեռքիս,
Գնաց նա գործ անելու...
Նկարեցի մայրիկիս՝
Առանց դեմքին նայելու։
Ահա հայացքը նրա,
Բարի ժպիտն աչքերի,
Ահա մատները բարակ.
Հյուսքերը թուխ մազերի։
Ինձ է նայում նա թղթից
Գեղեցկությամբ գույների,
Ես պատկերը մայրիկիս
Սրտիս խորքում ունեի։





digitised by A.R.A.R.@

# ՄԵԾ ՄԱՅՐԻԿԸ

ԼՈՒՍԻԿ ԲԱՌՆԱԿՅԱՆ

Նկ. ՎԱԶԻ ԹԵՎԱՆՅԱՆԻ

Ես պաղպաղակ շատ եմ սիրում, բայց մայրիկս ինձ համար պաղպաղակ չի գնում: Այո, նույնիսկ ամառվա ամենաշոգ օրերին: Իմ պատճառով Սուսաննան էլ է զրկվում պաղպաղակ ուտելուց: Քանի որ մենք միշտ միասին ենք տանից դուրս գալիս, մայրիկը միայն նրա համար հո չէ՞ր կարող գնել:

— Անահի՛տ, ուզո՞ւմ ես պաղպաղակ ուտել,—մի օր շատ հանգիստ տոնով հարցնում է մայրիկս:

Ես զարմացած նայում եմ նրան. չէ՞ որ դեռ ոչ մի դեպք չէր եղել, որ ես պաղպաղակ ուտեի ու նշագեղձերս չբորբոքվեին:

— Դե, իհա՛րկե, ուզում եմ, մայրի՛կ:

— Ուրեմն՝ պետք է մի շաբաթով հյուր գնաս հիվանդանոց: Բժիշկը կհեռացնի բորբոքված գեղձերդ, և դու հենց հիվանդանոցում էլ կսկսես պաղպաղակ ուտել:

Ես լուռ էի: Սկզբում ուզում էի վերհիշել պաղպաղակի համը, բայց երբ աչքիս առաջ եկան սպիտակ խալաթավոր բժիշկները, երևակայությամբ ձեռքս բռնած պաղպաղակը վայր ընկավ:

— Վախենում է,— լսեցի Սուսաննայի ձայնը:

Ես իսկույն բարձրացրի գլուխս.

— Կգնա՛մ, մայրի՛կ:

Եվ ահա ինձ տարան հիվանդանոց: Մեր հիվանդասենյակում չորս մահճակալ կար դրված: Իմ դիմացի մահճակալի վրա մի աղջիկ էր պառկած, մոտ վեց տարեկան: Ես զարմանում էի նրա համբերության վրա. ամբողջ օրը կարող էր ոչ մի բառ չասել: Նրա անունը Ալիսա էր: Քայլում էր գլուխը մի կողմի վրա թեքած (մի աչքը կապած էր վիրակապով), նայում էր սրան-նրան, չէր լսում մեծերին, կոնֆետի թղթերը թափում էր հատակին:

Ալիսան ինձ չէր սիրում:

Երրորդ մահճակալի տերը մի փոքրիկ աղջիկ էր, հինգ-վեց տարեկան, մազերը՝ ցանցառ, աչքերը՝ կապույտ-կապույտ, անունը՝ Ռուզաննա: Նրա հետ էր նաև նրա տատիկը: Ամբողջովին սպիտակած մազերով, սև, բարի աչքերով:

Ռուզաննան իր տատիկին մեծ մայրիկ էր ասում:

Չորրորդ մահճակալն ազատ էր:

Իմ գործը շատ հեշտ վերջացավ, ավելի հեշտ, քան մի պաղպաղակ ուտելուց հետո՝ երեք օր անկողնում պառկելը:

— Լա՛յն բաց արա բերանդ,— ասաց բժշկուհին, ինձ մի շատ հարմար բժշկական նստարանի վրա տեղավորելուց հետո: Ապա ինչ-որ դեղ սրսկեց, բերանս մնաց բաց, մինչև մի քանի անգամ թարթեցի աչքերս, բժշկուհին ասաց.

— Վերջացավ:

Եվ ես հենց նույն օրը պաղպաղակ կերա:

Հաջորդ օրը մեր սենյակի չորրորդ ազատ մահճակալի վրա հայտնվեց մի շատ փոքրիկ աղջիկ, աչքերը վիրակապով կապված:

— Ի՞նչ անեմ, բժշկուհի՛ ջան, հիվանդանոցում



մնալ չեմ կարող, տանը երեք ամսական երեխա ունեմ, սրան էլ այսպես թողնել չեմ կարող, սիրտը կպայթի,— ասում էր նրա մայրիկը:

— Ոչինչ էլ չի լինի, հիմա լաց կլինի, մի քիչ հետո կհանգստանա: Ես մարդ կուղարկեմ նրան նայելու:

Երեխայի մայրը մեծ դժվարությամբ դուրս եկավ սենյակից, մոտեցավ պատուհանին, աչքերը թաշկինակով սրբեց, մի անգամ էլ նայեց:

— Գնացե՛ք, գնացե՛ք, հիմա կհանգստանա,— ասում էր Ռուզաննայի տատիկը: Կհանգստանա, դա միայն նրա ու մեր բժշկուհու կարծիքն էր, իսկ փոքրիկը, որի անունը Անուշիկ էր, բոլորովին միտք չուներ հանգստանալու:

— Մա՛, մա՛, մա՛, մայրիկիս եմ ուզում,— անվերջ կրկնում էր նա:

Ես ու Ռուզաննայի տատիկը արդեն մտերմացել էինք: Ես ոտանավորներ էի արտասանում նրա համար, իսկ նա հանելուկներ էր ասում, երբեմն ինքն էր հնարում, և վատ չէր ստացվում:

Բայց ահա հայտնվեց այս փոքրիկը, և ամեն ինչ խառնվեց իրար:

Բժշկուհին նորից եկավ, հետն էլ՝ մի հիվանդա-



digitised by A.R.A.R.@

պահ մայրիկ, բայց ոչինչ չէր ուզում հասկանալ փոքրիկ Անուշիկը։

— Մա՜, մայրիկի՛ս եմ ուզում։

Երեխայի դեմքը կարմրել էր, բժշկուհին ասաց, որ տաքությունը բարձրացել է։ Հիվանդապահ մայրիկը ցանկացավ գրկել աղջկան, բայց փոքրիկը մի կողմ հրեց նրան։

Ես թթված դեմքով էի նայում փոքրիկին, Ռուզաննայի տատիկը դա նկատեց։

— Չի՛ կարելի, Անահի՛տ։

Նա ձեռքն ուսիս է դնում, մենք դուրս ենք գալիս միջանցք։ Հարևան սենյակում ծանր հիվանդ կա, այլևս ոչ ոք ուշադրություն չի դարձնում Անուշիկի վրա։ Բժշկուհիներն ու քույրերը մեկը մյուսի հետևից վազում են ծանր հիվանդի մոտ։

Տատիկը նայում է աչքերիս ու ասում.

— Մենք հիմա պետք է հանգստացնենք փոքրիկ Անուշիկին. նա մեր հյուրն է, մեր աղջիկը։

— Ինչպե՞ս։

— Հիմա կտեսնես։ Մենք կօգտվենք այն բանից, որ նրա աչքերը կապված են։ Ես ուշադիր լսեցի նրա մայրիկի ձայնը։ Նա այսպես էր ասում, չէ՞, Անահիտ. «Իմ լա՛վ բալիկ, Անուշի՛կ, ես քեզ մոտ եմ, ես ո՛չ մի տեղ չեմ գնա...»

Ես ուղղակի ապշել էի, կարծես աղջկա մայրն էր խոսում։

Ահա Ռուզաննայի տատիկը թակում է մեր սենյակի դուռը։

— Այդ ո՞վ է,—պայմանավորվածի պես հարցնում եմ ես։

— Ե՛ս եմ, Անուշիկի մայրիկը։

— Մտե՛ք, այստե՛ղ է Անուշիկը։

Անուշիկն իսկույն կտրում է ձայնն ու գլուխը դարձնում դռան կողմը։

— Ես այստե՛ղ եմ, իմ փոքրի՛կ, անո՛ւշ բալիկ,— ձայնը փոխելով՝ շշնջում է մայրիկը։

— Դու էլ չե՞ս գնա,—ասում է փոքրիկը, սեղմվելով մայրիկին։

— Ո՛չ, Անուշի՛կս։

Փոքրիկը, որ հոգնել էր լաց լինելուց, տեղավորվեց մայրիկի գրկում։ Ոչ թե տեղավորվեց, այլ կպավ նրա կրծքից և այլևս բաց չթողեց։

Մայրիկը հենց որ ցանկանում էր շարժվել, Անուշիկն իսկույն արթնանում էր ու ասում.

— Մա՛, մա՛, չգնա՛ս...

Ծածկեցի մայրիկի մեջքն ու քնեցի։ Երբ առավոտյան բաց արի աչքերս, մայրիկն այդպես էլ քնել էր Անուշիկին գրկած, մեջքը պատին հենած, գլուխն ուսի վրա ընկած։

Առավոտյան, երբ Անուշիկն արթնացավ, մայրիկը լվացվելու էր գնացել։

— Մա՛, մա՛,— կանչեց փոքրիկը։ Հետո նստեց թնկթնկաց, նորից ձեռքերը գցեց աչքերը ծածկող վիրակապին, փոքրիկ բռունցքով տրորեց քիթը։



Ներս մտավ մայրիկը։

— Արթնացե՞լ ես, բալի՛կս,— աղջկա գլուխը գրկելով՝ շշնջաց նա։

Փոքրիկը, որ հանգիստ քնելուց հետո, բավական լավ տրամադրությամբ էր արթնացել, բռնեց մայրիկի ձեռքը։

Մայրիկը համբուրեց նրա թաթիկը։

— Դու իմ մայրիկը չե՞ս,— տխուր-տխուր արտասանեց աղջիկը։

— Ես քո մեծ մայրիկն եմ, մի՞թե դու ինձ մոռացել ես. տե՞ս, կխռովեմ ու կգնամ։

— Մեծ մայրի՞կն ես... է՞ն, որ հեռու քաղաքում էր ապրում...— կարծես ինքն իրեն խոսեց աղջիկը։

Անուշիկը գլուխը քսեց մայրիկի ձեռքին, հետո վեր ցցեց դունչը, նա մի կերպ աշխատում էր տեսնել, բայց իզուր։

— Դու նամակ ստացա՞ր։



digitised by A.R.A.R.@

— Ինչո՞ւ, բալի՛կս, մայրիկդ գրել էր, որ Անուշիկը հիվանդ է:

— Հայրի՛կն էր գրել:

— Այո՛, հայրի՛կն էլ էր գրել, մայրի՛կն էլ, և ես քեզ համար եկա: Իսկ դու բոլորովին չես կարոտել ինձ, դու չես սիրում ինձ...

Փոքրիկը նորից փորձեց նայել:

— Որ աչքերս բաց անես, քեզ ամպի չափ կսիրեմ:



19-1508
64

— Օ՛, պստլիկ սատանա, ես հենց նրա համար եմ մնացել քեզ մոտ, որ աչքերդ փակ պահես, մինչև լավանաս:

Մայրիկը մի պահ լռեց, հետո ձեռքերը քաշելով՝ ասաց.

— Եթե իմանայի, որ դու չես կարոտել մեծ մայրիկին, ես չէի գա:

Անուշիկը կատվի նման թաթն արագ գցեց ու բռնեց մայրիկի ձեռքը.

— Ջե՛ս գնա, դու իմն ես...

Հենց նույն պահին մահճակալից վար ցատկեց Ռուզաննան:

— Ո՛չ, նա իմ մեծ մայրի՛կն է,— գոռաց նա և, խանդից բորբոքված, սկսեց իր կողմը քաշել մայրիկին: Մայրիկն ինձ հասկացրեց: Ես Ռուզաննային տարա միջանցք: Իմ գործն, իհարկե, ավելի դժվար էր, քան մայրիկինը: Մայրիկը պետք է համոզեր աչքերը կապած երեք տարեկան աղջկան, իսկ ես՝ աչքերը բաց վեց տարեկան մի չարաճճի աղջկա:

Այդ օրը Անուշիկի պատճառով ես զրկվեցի իմ շոկոլադի տուփից, երկու նկարազարդ գրքերից և մի տուփ գունավոր մատիտներից: Ամեն ինչ տվի Ռուզաննային, որ ձայնը կտրի ու փոքրիկից չխլի իր մայրիկին:

Եվ պատկերացնո՞ւմ եք, ամեն ինչ գնում էր շատ լավ, մայրիկը մեկ-մեկ դժվարանում էր պատասխանել Անուշիկի հարցերին, բայց շատ շուտ գլխի էր ընկնում և հարմարեցնում էր:

Գրեթե ամբողջ օրը մայրիկն զբաղվում էր Անուշիկի հետ, հնարում էր այնպիսի խաղեր, որոնք կարող են դուր գալ աչքերը կապած փոքրիկ աղջկան: Մեր սենյակից ժպիտները դեմքերին դուրս էին գալիս բժշկուհին, բուժքույրերն ու հիվանդապահ մայրիկները:

Երեք գիշեր մայրիկն անկողին չմտավ: Երեք ցերեկ հանդիպեց փոքրիկի մայրիկին, բայց ոչ մի խոսք իր մասին չասաց:

— Լա՛վ է, հանգիստ է, դուք հանգի՛ստ գնացեք: Ներս մտնելու կարիք չկա, պետք չի, որ Անուշիկը ձեր ձայնը լսի, նորից կսկսի լաց լինել:

* * *

Մի օր վաղ առավոտյան ես սկսեցի հավաքել իմ իրերը, ինձ դուրս էին գրել հիվանդանոցից:

— Վա՛հ, Անահի՛տ, մենք էլ ենք այսօր գնալու, չգիտե՞ս,— հանկարծ ասաց Ռուզաննան:

— Մի՞թե, ճի՞շտ, մայրի՛կ, դու՞ք էլ...

— Սո՛ւս,— մատը շրթունքներին սեղմեց մայրիկը,— Անուշիկը կլսի:

Ես ու Ռուզաննան պատուհանից նայում էինք դուրս և վիճում: Ես պնդում էի, որ իմ մայրիկն ու հայրիկը շուտ կգան, Ռուզաննան էլ թե՝ իր հայրիկն ու մայրիկը շուտ կգան:

Անցնում էին ժամերը, դանդա՛ղ, դանդա՛ղ:

Վերջապես հայտնվեց մարդատար մի մեքենա և միջից դուրս եկավ Ռուզաննայի հայրիկը:

Ես տխրեցի:

Նախ՝ այն պատճառով, որ Ռուզանը ճիշտ դուրս եկավ, երկրորդ՝ նրա համար, որ պատկերացրի, թե ինչ կլինի Անուշիկի վիճակը, երբ քնից արթնանալով չպիտի կարողանա գտնել մեծ մայրիկին: Հիշեցի առաջին օրվա նրա լացի ձայնը, և սիրտս շարժվեց, քիչ մնաց ես էլ սկսեի լաց լինել:

Մայրիկն արագ-արագ վերցրեց կապոցները:

Ռուզաննան փաթաթվեց ինձ: Ես ձեռքս մեկնեցի մայրիկին, բայց նա նորից մատը տարավ դեպի շրթունքները:





ՊԵՏԱԿԱՆ ԳՐԱԴԱՐԱՆ
Гос Библиотека
ՀՍՍՀ-Арм ССР
им. А. Мяс
ՄՅԱՍ ՆԻԿՅԱՆԻ ԱՆՎԱՆ

digitised by A.R.A.R.@

— Սո՛ւս, Անուշիկը կլսի։

Եվ գնաց մայրիկը, առանց ցտեսություն ասելու, առանց իմ կողմը նայելու…

Ես վշտացած նայում էի պատուհանից դուրս։ Նրանց մեքենան մոտեցել էր շքամուտքի դռանը և այլևս չէր երևում։

Ես մերթ նայում էի դեպի փողոց, որտեղից պիտի հայտնվեին հայրիկս ու մայրիկս, մեկ էլ դեպի այն ճանապարհը, որտեղից պիտի դուրս գար մայրիկին ու Ռուզաննային տանող մեքենան։

Լսվեց սուլոց, և ես տեսա, թե ինչպես էր Ռուզաննան թափահարում ձեռքը։

Նրանք գնացին։

Ես տխրեցի։

Սենյակում լռություն էր։

Հանգիստ՝ քնած էր Անուշիկը։

Հանկարծ կամացուկ բացվեց մեր սենյակի դուռը և թաթերի վրա քայլելով ներս մտավ մայրիկը։

— Դո՞ւք…

— Սո՛ւս,— դարձյալ մատը շրթունքներին սեղմեց նա։

— Անուշիկը թող քնի, այս գիշեր լավ չի քնել։

— Իսկ դո՞ւք…

— Չգնացի,— շշնջաց նա։

* * *

Ինձ ճանապարհ դնելու համար մեծ մայրիկը դուրս եկավ մինչև շքամուտքը, բարևեց հայրիկիս, մայրիկիս, համբուրեց ինձ և ասաց.

— Գնաս բարո՛վ, փոքրի՛կ օգնական։

Մեքենան սլանում էր Երևանի գեղեցիկ փողոցներով դեպի Կոմիտաս։ Ես տուն էի վերադառնում։ Աշխատում էի մի կողմ թողնել հիվանդանոցային հուշերը, բայց չէր ստացվում, իմ ուղեղում ու սրտիս մեջ ամուր նստել էր մեծ մայրիկը։

Ահա նա մատը շրթունքներին սեղմած՝ շշընջում է.

Սո՛ւս, Անուշիկը քնած է…




ԽԱԺԱԿ ԳՅՈՒԼՆԱԶԱՐՅԱՆ



Ես սիրում եմ մեր գյուղի ճանապարհները, դրանց ամեն քարը ծանոթ է ինձ: Այգեմիջյան ճանապարհներին ես ձի եմ քշել, ինչ անենք, թե դա չորքոտանի չէր, բաշը թափ չէր տալիս արաբական նժույգների նման, դե, արևածաղկի ցողունը բաշ կունենա՞… Բայց դա ձի էր, ազնիվ խուռ, իսկական ձի, որ թռցնում էր ինձ ծանոթ ճանապարհներով ու, թե մայրս ձայն չտար, նրա ընթացքը չխափաներ, նա ինձ կտաներ հեռո՜ւ, հեռո՜ւ, աշխարհի ծայրը…

Ես սիրում եմ մեր գյուղի ճանապարհները, մեր գյուղի այգիներն եմ սիրում, զուլալ առուների բարե կամուրջները… Մեր գյուղն ամբողջովին:

Հիմա մեր գյուղի ճանապարհների վրա ուրիշ ձիեր են վարգում, որդուս ու նրա ընկերների ձիերը: Նրանք էլ են թռչում հեռու, աշխարհի ծայրը, որ մոտ է Քասախի պռնկին, քանի որ մայրերն, առաջվա նման, խափանում են նժույգների վազքը:

Ճանապարհները գնալով գեղեցկանում են, էլ խորդուբորդ ցեխափոսերը չկան, քանի որ ավտոմեքենաները սայլեր չեն, ավտոմեքենաներն ավելի կուլտուրական են ու պահանջկոտ: Բայց ճանապարհներն էլի նույն հեռանկարն ունեն, էլի տանում են աշխարհի ծայրը, թեև սկիզբ են առնում տարբեր տեղերից… Դրանք բաժանվում են, միանում, բաժանվում, միանում, բայց բոլորն էլ…

Մեր ճանապարհները բաժանվեցին:

Հենց որ պիոներական վզկապները հանեցինք,

Սահակը տեխնիկում գնաց, ես՝ նկարչական ուսումնարան:

Առաջին տարիներին ներկն ավելի շատ թղթից էր լինում, քան կտավի վրա: Ես փայտե ձին հեծած արշավում էի արվեստի ճանապարհներով: Իմ ձին ինձ դարձյալ ձի էր թվում, թվում էր, թե դրանով կհասնեմ աշխարհի ծայրը: Հետո կամացկամաց վազելու ցանկությունը հանդարտվեց: Ես տեսա, զգացի, որ ձիս արևածաղկի ցողունից է ու դրանով աշխարհի ծայրը չես հասնի: Ափսոսում էի, բայց փայտե ձիս կապեցի գոմում, նստեցի, շատ նստեցի, անկարևոր, դասերս սերտելու, մինչև ուսումնարանում ինձ տվեցին մի իսկական ձի:



digitised by A.R.A.R.@





*ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆ*

— Վա՜յ, վա՜յ, տեսեք ի՜նչ են արել, —
կանչեց Հայկը սրախոս, —
Թերթում Սոսին են նկարել,
Ինքը այստեղ չի ափսոս...

Հավաքվեցինք ու ի՜նչ տեսնենք՝
Մի կրիա է ահագին,
Որ սողում է՝ «երկուսների»
Ծանր բեռը շալակին։

Բոլորն իսկույն գլխի ընկան,
Ծիծաղեցին ու ասին.
— Դե, պարզ բան է, որ այդ կրիան
Նման է շատ մեր Սոսին։

Եվ ինչպես միշտ, այդ օրն էլ հենց
Սոսն էր նորից ուշացել,
Երբ ներս մտավ, Հայկը կանչեց.
— Կրիա՜, քնո՞վ ես անցել...

Մեր ծիծաղը ուժգին պոռթկաց,
Միայն Սոսն էր կանգնել լուռ,
Նա անկյունում կանգնած մնաց,
Ինչպես օտար, անկոչ հյուր...

Ամիսներ են անցել քանի,
Բայց մեր ամբողջ ավանում
Ծույլ Սոսիկին այդ օրվանից
Դեռ «Կրիա» են անվանում։

Ջգո՜ւյշ, զգո՜ւյշ եղեք կյանքում
Դուք անունից ածական,
Դա ավելի պինդ է կպչում,
Քան անունը սեփական։



Նկ. ՎԱՆԻԿ ՇԱՐԱՄԲԵՅԱՆԻ

Ծառերինն իմից լավն էր, իմը, խոստովանում եմ, մի քիչ կաղում էր: Գծանկարիս դասատուն կրկնում էր ամեն օր.

— Տունը տան նման պիտի լինի, այսպիսի պատուհան որտե՞ղ ես տեսել...

Մի խոսքով. նկարում էի, բայց վատ էի նկարում:

Սահակն էլ շինարարական տեխնիկումում ընկերքից վազել էր փայտե ձիով, նրան էլ թվացել էր, թե դրանով կհասնի աշխարհի ծայրը: Մինչև կամաց-կամաց վազելու ցանկությունը հանդարտվել էր, նա էլ տեսել ու հասկացել էր, որ ձին արևածաղկի ցողունից է ու դրանով աշխարհի ծայրը չես հասնի մեր այս տեխնիկայի դարում: Նրա սիրտն էլ էր, շատ էր նստել «անկարևոր» դասերը սերտելու, մինչև...

* * *

Ամառային առաջին արձակուրդներին ես ու Սահակը հանդիպեցինք այգեմիջյան ճանապարհին: Ես հետս կտավ ու ներկեր էի տարել, որ մարդիկ նկատեին, թե նկարիչ եմ: Սահակի գրպանում կլոր տուփ կար, մետաղե մետրը միջին, բերել էր, որ մարդիկ նկատեին, թե շինարար է:

— Բարև՛, Արամ:

— Բարև՛, Սահակ:

— Նկարու՞մ ես:

— Մեր ճանապարհները սիրուն են, չէ՞,— հարցրի:

— Ոչինչ,— պատասխանեց մեծավարի,— մի քիչ նեղլիկ են, մի քիչ քարքարոտ:

Էլ ոչինչ չխոսեցինք: Ես Սահակից նեղացա: Ինձ թվաց, թե նա չի սիրում մեր ճանապարհները:

Մի տարի հետո, ամառային երկրորդ արձակուրդներին կրկին հանդիպեցինք այգեմիջյան ճանապարհին: Ես հետս կտավ ու ներկ չէի տարել, արդեն հասկանում էի, թե դեռ նկարիչ չեմ: Սահակն իր հետ մետաղե մետր չէր բերել, արդեն հասկանում էր, որ դեռ շինարար չէ:

Զարմանալի է, այդ օրը ինձ էլ թվաց, որ մեր ճանապարհները մի քիչ նեղլիկ են, մի քիչ քարքարոտ: Փայտե ձի քշելու համար, իհարկե, ոչինչ, բայց ճանապարհները միայն դրա համար չեն,



digitised by A.R.A.R.@

փայտե ձիով աշխարհի ծայրը չես հասնի...

Իսկ Սահակն արդեն երազում էր իսկական շինարարի նման.

— Մի տե՛ս, թե ի՞նչ են դառնալու մեր ծուռտիկ ճանապարհները: Հետիոտների համար երկու կողմից մայթեր կլինեն, մայթերի մոտ՝ շարքով գեղեցիկ ծառեր... Ասֆալտե ճանապարհները կգընան հեռու՜, հեռու՜, կկորչեն աշխարհի ծայրին, իսկ դրանց եզրերին, կանաչ պարտեզների մեջ, աչքով կանեն սպիտակ, փառահեղ տները... Լավն էր ընկերոջս երազը... Իհարկե, մեր ճանապարհները մի քիչ նեղլիկ էին, մի քիչ քարքարոտ...



* * *

Տարիներն անցան. ինձ համար՝ էսքիզների ու էտյուդների մեջ, Սահակի համար՝ լայն ճանապարհների նախագծերում:

Ու հանդիպեցինք երրորդ անգամ:

Նրա մատները կոշտ էին, բայց դրանք արդեն սիրելի էին ինձ: Նա մեր գյուղի առաջին ասֆալտապատ ճանապարհն էր անցկացնում: Բերել էր իր մետաղե հսկաներին: Գյուղի խաղաղ այգիները զարմացել էին: Սահակի սկրեպերներն ու բուլդոզերները հոնդում էին, և նա ժպտում էր արևախանձ աչքերով: Նա դեռ ճանապարհի մի մասն էր անցկացրել, բայց դրա եզրին կարմիր փողկապավորները արդեն ծառեր էին տնկում, ու առաջին գեղեցիկ շենքերը սպիտակին էին տալիս կանաչ պարտեզների մեջ:

Սահակը ճանապարհի մի փոքրիկ մասն էր անցկացրել, բայց ժպտում էր արևախանձ աչքերով, քանի որ տեսնում էր իր ճանապարհն ամբողջովին: Ես էլ եմ տեսնում այդ ճանապարհը, նա շըքեղ, գեղուղեշ ձգվում, կորչում է անսահմանության մեջ, աշխարհի ծայրին, որ այլևս մոտ չէ Քասախի ձորի պռնկին...

* * *

Ես սիրում եմ մեր գյուղի ճանապարհները:

Դրանցում իմ ընկեր Սահակի ու հարյուրավոր, հարյուրավոր շինարարների տքնությունը կա, դըրանք հանդիպում են իրար, բաժանվում, հանդիպում... բայց բոլորն էլ տանում են հեռու՜, հեռու՜, աշխարհի ծայրը, դեպի բոլոր մանուկների երազը երջանկության մասին: Դրանցով վարգի՛ր, կհասնես ուզածդ վայրը, թեկուզ փայտե ձիով...

Ես նկարիչ եմ, նկարում եմ մեր գյուղի ճանապարհները: Իմ նկարները հավանում են, դրանք ուրախություն են պատճառում մարդկանց, ինչպես Սահակի շքեղ ճանապարհները:

Ուրեմն, չեն բաժանվել մեր ուղիները, ուրեմն, ես ու Սահակը գնում ենք նույն ճանապարհով, համենայն դեպս, նույնն է հեռանկարը...

# ՁԿՆՈՐ

ՀԵՆՐԻԿ ՍԵՎԱՆ

Ձուկ էր ուզում  
Տատս հիվանդ,  
Կարթը ձեռքիս  
Վազեցի հանդ,

Սարերն ելա  
Ես մեր գյուղի,  
Անտառ մտա  
Ու սայլուղի,



digitised by A.R.A.R.@






ՀԱՆՐԻ ԶԱՐՅԱՆ

Ուսուցչուհին բարկությունից չգիտեր ինչ աներ. ոչ ոք չէր ուզում պատասխանել դասը: Ում անունը կարդում էր, հերթով ոտքի էին կանգնում, կմկմում, որ անգիր չգիտեն, ու նորից նստում էին տեղները:

Ուսուցչուհին վեր կացավ, սկսեց զննել դասարանը: Բոլորը միահամուռ կերպով խոնարհել էին գլուխները...

— Ո՞վ կարող է պատասխանել...

Ոչ մեկը գլուխը չբարձրացրեց: Միայն Վարդանիկն էր, բերանը բաց նայում: Ուսուցչուհին որոշեց նրան հարցնել, բայց իսկույն մտածեց. «Վարդանիկը ե՞րբ է դասը իմացել, որ այսօր իմանա» և նա մատն ուղղեց հետևի նստարանների կողմը.

— Դո՛ւ, Գագի՛կ...




Հարվածային Գագիկը ոտքի կանգնեց ու հառաչեց.

— Անգիր չգիտեմ, ընկե՛ր Շուշիկ:

— Ինչու՞ չգիտես:

Տղան չէր պատասխանում:

— Նստի՛ր,— ավելի բարկացավ ուսուցչուհին ու նորից սկսեց դասարանը զննել:

Չէ, միայն Վարդանիկն էր նայում իրեն և այն էլ այնպիսի հայացքով, որ ավելի լավ էր՝ չնայեր...

— Դու՞ էլ անգիր չգիտես, Նունի՛կ,— հարցրեց ուսուցչուհին:

Վարդանիկը շուռ եկավ, սկսեց գերազանցիկ Նունիկին նայել: Նունիկն ասաց, որ գիտի անգիր: Ուսուցչուհին մեղմացավ մի փոքր, հարցրեց, թե՝ հապա ինչու չի ուզում պատասխանել: Նունիկն ասաց, որ լավ չգիտի, դրա համար:

— Ոչինչ,— ժպտաց ուսուցչուհին,— արտասանի՛ր:

Նունիկն սկսեց.

«Կարդա՛, ա՛յ իմ խելոք մանուկ,
Կարդա՛, գրի՛ր տարին բոլոր,
Կարդացողի խելքն է կտրուկ.
Միտքը՝ պայծառ ու լուսավոր... լուսավոր, լուսավոր...»

Նունիկը շփոթվեց: Վարդանիկն ավելի լայն բաց արեց բերանը... Իսկ երբ Նունիկն սկսեց լաց լինել, Վարդանիկը բերանը փակեց: Ախար, ընկեր Շուշիկը նրա հոգին հանել է՝ միշտ Նունիկին օրինակ բերելով: Դե թող հիմա տզզա: Վարդանիկն ընդհանրապես գերազանցիկներին ու հարվածայիններին տանել չէր կարողանում՝ նրանց լացկան բնավորության համար: Զարմացնում են իրենց. «4» ստանալուց էլ են լաց լինում: Մա՞րդ էլ թվանշանի համար լաց լինի: Բա իր ջանը քա՞ր է, որ իսկի «4» էլ չի ստացել կյանքում: Իսկ «5» ստանալը ոնց որ երազի նման մի բան... Ինքը «3» էլ որ ստանում է, շատ գոհ է և՛ իրենից, և՛ աշխարհից, և՛ ընկեր Շուշիկից: Իսկ սրանք հենց մի գլուխ սկսում են տզզալ: Դե թող տզզա հիմա...

Կողքին նստած Մուկուչը կամացուկ ասաց.

— Վարդանի՛կ:

— Ի՞նչ:



digitised by A.R.A.R.@



Նկ. ԱՐՄԻՆԵ ԳԱԼԵՆՑԻ

— Կարո՞ղ է պատահել, որ դու էլ լաց լինես թվանշանի համար:

— Ես հո գերազանցիկ չե՞մ, որ լաց լինեմ թվանշանի համար,— քմծիծաղ տվեց Վարդանիկը:

— Ե՛ս էլ,— իսկույն համաձայնեց Մուկուչը:

— Ի՞նչ եք խոսում, Վարդանի՛կ,— բարկացավ ուսուցչուհին:

— Ես չեմ խոսում, ընկե՛ր Շուշիկ,— Մուկուչին ցույց տվեց Վարդանիկը:

Ուսուցչուհին բարկացած դիմեց Մուկուչին.

— Իսկ դասդ գիտե՞ս:

— Անգիր չգիտեմ, ընկե՛ր Շուշիկ,— ծոծրակը քորելով ոտքի ելավ Մուկուչը:

— Նստի՛ր,— հրամայեց ուսուցչուհին:

Մուկուչը նստեց ու վիրավորված հայացքով Վարդանիկին էր նայում: Բայց Վարդանիկն այլևս ուշադրություն չէր դարձնում նրա վրա. բաց էր արել բերանն ու նայում էր լուսամուտի տակի ջեռուցման խողովակին... Հետո նա ավելի լայն բաց արեց բերանը. աչքերն էլ լայնացան, և մատը վեր տնկեց...

Ուսուցչուհին զարմացավ.

— Ուզում ես պատասխանե՞լ, Վարդանի՛կ:

— Ո՛չ, ընկե՛ր Շուշիկ,— հայացքը ջեռուցման խողովակին՝ ասաց Վարդանիկը:

— Հապա ի՞նչ:

— Խողովակի տակ մուկ է մտել, թույլ կտա՞ք բռնեմ, ընկե՛ր Շուշիկ...

Դասարանն ուշքից գնաց. նույնիսկ Նունիկը վիշտը մոռացավ և ծիծաղում էր նրա վրա...

— Ինչո՞ւ ես ծիծաղում, տզզանի մեկը,— բացականչեց Վարդանիկը վիրավորված:

Ուսուցչուհին դուրս հրավիրեց նրան դասարանից, բայց նա չէր ուզում գնալ...

— Ի՞նչ եմ արել, է՜, ընկե՛ր Շուշիկ... Ուզո՞ւմ եք՝ պատասխանեմ դասը...

— Գիտե՞ս անգիր,— մեղմացավ ուսուցչուհին:

— Գիտեմ,— մրթմրթաց Վարդանիկն ու, մի փոքր լռությունից հետո, սկսեց.

«Կարդա՛, ա՛յ իմ խելոք մանուկ,

Կարդա՛, գրի՛ր տարին բոլոր...»

Դասարանը քարացավ. բոլորը զարմացած նրան էին նայում... Իսկ նա շարունակում էր... Եվ առանց շփոթվելու՝ մի շնչով, լրիվ ասաց անգիրը: Դասարանն ապշել էր: Վարդանիկն ինքն էլ էր ապշել... Իսկ Նունիկը նորից սկսեց լաց լինել:

Ուսուցչուհին պահանջեց, որ Վարդանիկն օրագիրը բերի: Տղան օրագիրը վերցրեց և մոտեցավ: Ուսուցչուհին գովեց նրան, բաց արեց օրագիրն ու «5» նշանակեց: Վարդանիկն աչքերին չէր հավատում... Ախար ինքը կյանքում «4» էլ չէր ստացել...

Հետո ընկեր Շուշիկը շոյեց նրա գլուխն ու հարցրեց.

— Կարո՞ղ ես միշտ այսպես պատասխանել, Վարդանի՛կ:

— Կարող եմ,— ասաց Վարդանիկը:

Եվ հանկարծ... և հանկարծ սկսեց լաց լինել...

— Ինչո՞ւ ես լաց լինում, Վարդանի՛կ,— ժպտաց ուսուցչուհին:

Տղան ինքն էլ չէր հասկանում, թե, իսկապես, ինչո՞ւ է լաց լինում:

— Չգիտեմ, ընկե՛ր Շուշիկ... չգիտե՜մ...

Երբ զանգը հնչեց, բոլորը դուրս վազեցին: Բայց Վարդանիկը դեռ դասարանում նստած էր ու բերանը բաց՝ իր «5»-ին էր նայում: Ախար նա «5» երազում էլ չէր տեսել... Հետո, տղան փակեց բերանը և սկսեց հասկանալ, թե ինչ լավ բան է «5» ստանալը: Ահա թե ինչու էին գերազանցիկներն ու հարվածայինները տզզում «5» չստանալու համար...



digitised by A.R.A.R.@

# „ՍԱՔՍԱՈՒԼ"

*ՄԻՔԱՅԵԼ ՇԱԹԻՐՅԱՆ*

*Նկ. ԱԼԲԵՐՏ ՅԱՐԱԼՅԱՆԻ*

Ես, հեծանիվը ուսովս գցած, վազեվազ բարձրացա հողաթմբի վրա, որի հետև գտնվում էր Կոմսոմոլի անվան այգու լիճը: Եվ իսկույն տեսա ափին խմբված մարդկանց: Նրանք հավաքվել էին ինչ-որ բանի շուրջը, և ես գիտեի, որ դա նավակն է: Բայց մարդիկ չէին թողնում, որ նավակն երևա. միայն երևում էին հաստ երշիկի նման ինչ-որ գլան, ալյումինի խողովակներ, կարմիր ներկված տախտակներ...

Ես չէի ուզում մոտենալ խմբին, որպեսզի չհանդիպեմ նրանց: Համոզված էի, որ հենց տեսնեն ինձ, անմիջապես քթները վեր կցցեն ու գոռոզ քմծիծաղով իրար կնայեն. «տեսա՞ր. չդիմացավ, եկավ...» Բայց ետ դառնալ, առանց նավակը տեսնելու, նույնպես չէի կարող: Ես պիտի համոզվեի, որ նրանք իրոք սարքել են այնպես, ինչպես նախագծված էր:

Մի պահ ես դեռ տատանվում էի: Հետո մտածեցի. եթէ նավակը դեռ ափին է, ուրեմն լիովին հավաքված չի: Նրանց գլուխը դեռ խառն է. աննկատելի կմոտենամ, կկանգնեմ ահա այն ծառի հետևում, մի անգամ աչքի պոչով կնայեմ նավակին և իսկույն կծլկեմ... Նրանք իսկի չեն էլ իմանա, թե այստեղ եմ եղել:

Ես ուսիցս իջեցրեցի հեծանիվը ու դանդաղ շարժվեցի խմբի կողմը: Սիրտս խփում էր այնպիսի թնդյունով, կարծես թե գողություն անելու էի գնում: Բայց ես համառորեն քայլում էի առաջ:

Վերջապես մոտեցա խմբին ամենից մոտ գտնըվող ծառին, կանգնեցի նրա հետևում ու նայեցի նավակին... Ո՛չ, այնպես չէին սարքել, ինչպես նախագծված էր: Մեկ ձվաձև լողանի փոխարեն, իրար զուգահեռ ձգվում էին երկու հատ երեք մետրանոց հաստ գլաններ: Երևի ամեն մեկի մեջ տասնհինգից ոչ պակաս կամերա է տեղավորված: Պարզ է, որ գործադրել են «Հերետիկոսի» սկըզբունքը: Եվ նավակի հիմնակմախքը սարքել են ոչ թե փայտից, այլ ալյումինի խողովակներից...

Ինչ խոսք, նավակն այդպես ավելի ամուր ու թեթև կլինի, բայց ինչո՞ւ են հիմնակմախքը տեղադրել լողանների վրա, այլ ոչ թե նրանց արանքում: Ախր, եթե ալիքների հարվածից լողանները դուրս պրծնեն՝ մենք ջուրը կընկնենք...

Մե՞նք... Ես հիշեցի, որ իրավունք չունեմ այդ խոսքը գործածելու: Ոչ թե մենք, այլ նրանք: Որովհետև ես այլևս նրանց հետ չեմ: Նրանք առանց ինձ սարքեցին նավակը...

«Դեհ, ի՞նչ կա որ, ավելի լավ,—ասացի ինքս ինձ:— Լողանները դուրս կպրծնեն հիմնակմախքի տակից, և նրանք ջուրը կընկնեն»: Ես ձգեցի վիզս, որպեսզի մեկ անգամ էլ համոզվեմ, թե հենց այդպես էլ կլինի: Ու հանկարծ իմ ականջին հասավ ներկաներից մեկի ձայնը.

— «Սաքսաո՛ւլ»... Այս ինչ տարօրինակ անուն եք դրել... Սաքսաուլը, որքան գիտեմ, անապատի բույս է և մեզ մոտ չի էլ աճում: Ի՞նչ կապ ունի դա ձեր նավակի հետ...

Ես իսկույն փոխեցի հայացքս նավակի վրա և նոր միայն նկատեցի լողանի կողին կարմիր տառերով գրված անունը.

### «Սաքսաուլ»

Տառերից մի քանիսն ավելի մեծ էին, քան մյուսները, բայց դա նրանից էր, որ կամերաները հավասար չէին փչած: Այժմ նրանցից մեկը, այն գոնչոգլուխ արջը, հեծանիվի օդամուղով լրացնում էր թույլ փչած կամերաների օդը, այնինչ մյուսը՝ նիհար ու վտիտ խըլեզը, բացատրում էր հարց տվողին.



— «Սաքսաուլ» անունը ոչ մի կապ չունի ձեր ասած բույսի հետ... Սա բոլորովին ուրիշ բան է...

«Սաքսաուլ»... Ա՛յ թե ինչպես են անվանել նրանք իրենց նավակը:

Իհարկե, դա անհավատալի բան է, բայց արի ու տես, որ այդպես պատահեց, երբ մենք փոխադրվեցինք մեր նորակառույց տունը, պարզվեց, որ մեր շքամուտքի երրորդ հարկի երեք բնակարաններից ամեն մեկում ապրում է Սարգիս անունով մի տղա: Դա և՛ ծիծաղելի էր, և՛ անհաճելի, ուստի մենք սկզբում խուսափում էինք իրարից և չէինք ուզում իրար հետ ընկերություն անել:

Բայց չէ՞ որ անկարելի բան է՝ իրար կողքի ապրել և ընկերություն



digitised by A.R.A.R.@

չանել։ Առավել ևս՝ երբ մենք նոր տուն փոխադրվելուց հետո, սկսեցինք այդ թաղի դպրոցը հաճախել։ Ուզեինք-չուզեինք՝ ընկերացանք և, որպեսզի տարբերվենք իրարից, ճշտեցինք մեր անունները հետևյալ ձևով. Սարգսիկ, Սաքո, Սաքուլ։

Ես պահպանեցի Սարգսիկ անունը, ինչպես մանկուց ինձ կոչում էին տանը։ Ասենք, Սաքոյին էլ ծնված օրից Սարգսիկ էին ասում, բայց հիմա նա դառել է հաղթանդամ, ծանրակշիռ, բիզ-բիզ մազերով ու սև հոնքերով մի տղա. ասես Թումանյանի լոռեցի Սաքոն լինի։ Իսկ Սաքուլը մեր երկուսից մի տարով փոքր է, կարճահասակ ու «աքաղաղի քաշով», և դա էլ որոշեց նրա նոր փաղաքշական անունը։

Հետզհետե մենք դառանք բոլորովին անբաժան ընկերներ։ Դպրոց լինեն թե կինո, լողի խմբակ թե ֆուտբոլի մրցումներ՝ միշտ միասին էինք գնում։ Այդ պատճառով էլ բակի «սրամիտ» տղաներից մեկը կնքեց մեր եռյակին հավաքական անունով. սկզբում՝ «Սարգսաքսաքուլ», իսկ հետո ավելի կարճ՝ «Սաքսաուլ»։

Մենք, իհարկե, կատաղում էինք մեզ այդպես անվանելու համար, կռվում էինք տղաների հետ։ Բայց մի օր էլ ես ասացի.

— Տո՛ հենց թող էդպես լինի՝ Սաքսաուլ... Ինչո՞ւ ֆուտբոլի մի թիմը կկոչվի «Արարատ», մյուսը՝ «Շիրակ», երրորդը՝ «Լոռի», իսկ մեր եռյակը չի կարող կոչվել «Սաքսաուլ»։ Մենք էլ մի թիմ ենք, բայց ավելի սերտ ու համերաշխ։ Կարո՞ղ եք մեզ նման ընկերություն անել՝ արեք, չե՞ք կարող՝ դե նախանձից ճաքեք...

Ու այդ օրվանից ինքներս էլ սկսեցինք մեզ «Սաքսաուլ» կոչել։ Եթե, օրինակ, բակում ծառեր էին տնկում, ես իսկույն բղավում էի.

— «Սաքսաուլը» կտնկի իր ծառ...

Եվ դրանից հետո այդ ծառերը այդպես էլ անվանում էին. «Սաքսաուլի ծառերը»։

Իսկ հիմա նրանք այդ անունը տվել են իրենց նավակին։ Եվ ես գիտեմ, որ դա այլևս չի նշանակում Սարգիս-Սաքո-Սաքուլ...

Սաքո-Սաքուլ, ա՛յ թե ինչ են հասկանում նրանք այդ անվան տակ։

Մտքերով տարված, ես այդպես էլ չլսեցի, թե ինչ պատասխանեց Սաքուլը հավաքվածներին նավակի անվան մասին։ Իսկ այդ մարդկանց, ըստ երևույթին, սաստիկ հետաքրքրում էր տղաների նավակը, ուստի անընդհատ հարցեր էին տալիս.

— Բայց ո՞նց որոշեցիք հենց այսպիսի նավակ սարքել։ Որևէ տեղից վերցրե՞լ եք սրա գծագրերը, թե՞ ինքներդ եք մտածել...

Սաքոն, որ միշտ էլ չխոսկանի մեկն էր, հիմա ևս բացատրություն տալը թողել էր Սաքուլի վրա, իսկ ինքը շարունակում էր փստացնել օղամուղը։



Ասենք, նրանք երևի միայն մի օղամուղ ունեին, այնպես որ մեկը ուզեր-չուզեր անգործ պիտի մնար։

— Իհարկե, սկզբում մենք որոշ գրքեր կարդացինք, բայց հետո ինքներս այնքան նոր բաներ մտածեցինք, փոխեցինք, որ սկզբնական նախագծից ոչինչ չմնաց,— ինքնագոհ բլբլացնում էր Սաքուլը։

Իսկ ես լսում էի ու մտածում, որ նա լավ չի պատմում այդ մասին։ Ավելի շուտ՝ ճիշտ չի պատմում։ Եթե ինձ հարցնեին՝ ես ամեն ինչ այլ կերպ կպատմեի...

Այո, այդ նավակը սարքելու միտքը առաջին անգամ ես տվեցի։ Հիմա Սաքոն ու Սաքուլը, իհարկե, չեն էլ ուզում հիշել այդ, բայց ճշմարտությունը դա է։

Ես հիշում եմ այն օրը, երբ մենք, իրար հետևից կարդալով Թուր Հեյերդալի «Կոն-Թիկին» և Ալեն Բոմբարի «Կամովին նավաբեկյալը», հավաքվել էինք մեր տանը և ոգևորված խոսում էինք այդ գրքերի հերոսների մասին։

— Այ ինչ եմ ասե՛լ,— գոռում էր Սաքուլը։— Նստել գերաններից սարքած մի լաստ, բարձրացնել սովորական մի առագաստ և կտրել-անցնել համարյա



digitised by A.R.A.R.@

ութ հազար կիլոմետր Խաղաղ օվկիանոսով... Կյանքիս կեսը կտայի, որ նրանց հետ լինեի...

Նույնիսկ Սաքոն այդ օրը մի երկար ճառ ասաց: Նա էլ պատրաստ էր կյանքի կեսը տալ, որպեսզի մասնակցեր Ալեն Բոմբարի ճանապարհորդությանը: Հե՛շտ է ասել, մարդը մեն-մենակ նստում է ռետինե «Հերետիկոս» նավակը և, կերակրվելով միայն ծովից ձեռք բերված սնունդով, անցնում է Ատլանտյան օվկիանոսը, որպեսզի ապացուցի, թե նավաբեկյալները կարող են ծովում և՛ ջուր, և՛ սնունդ գտնել ու փրկել իրենց կյանքը:

Այնուհետև նրանք սկսեցին զանգատվել, թե ինչու Երևանի մոտ էլ որևէ օվկիանոս չկա, որ մենք էլ կարողանայինք նավակ կամ լաստ շինել ու այդպիսի ճանապարհորդություններ կատարել: Ահա այդ ժամանակ էլ ես ասացի.



— Իսկ ծեզ անպայմա՞ն օվկիանո՞ս է պետք: Եկեք Սևանա լճում ճանապարհորդենք...

Տղաները մի պահ զարմացած ինձ էին նայում, թե հո կատակ չե՞մ անում: Հետո Սաքոն իր անագին թաթով բամփեց գլխիս ու ասաց.

— Ձե՞ռք ես առնում մեզ... Մենք ասում ենք Խաղաղ օվկիանոս, իսկ սա՝ Սևան...

— Ճիշտ որ, է՛... —քրքջաց Սաքուլը:

Իհարկե, եթե այդպիսի առաջարկ մեկ ուրիշն արած լիներ, երևի ես էլ նրա վրա ծիծաղեի: Բայց քանի որ հիմաի՛մ առաջարկի վրա էին ծիծաղում, ես տաք-տաք վրա տվեցի.

— Խաղաղ օվկիանոս, Ատլանտյան օվկիանո՛ս... Դատարկ երազներ են, որ երբեք չեն իրականանա: Իսկ Սևանում ճանապարհորդել կարելի է, ու շատ էլ հետաքրքիր կլինի... —Ես վազեցի հայրիկիս սենյակը և բերեցի Հայաստանի քարտեզը:—Տեսե՛ք, ինչքան գյուղ ու քաղաք կա մեր լճի շուրջը՝ Սևան, Կամո, Մարտունի, Բասարգեչար: Ահա Ծովինարը, Նորադուզը, Այրեվանը, Լճափը, Ծովակը և տասնյակ ուրիշ գյուղեր ու ավաններ... Եղե՞լ եք դուք այդ վայրերում... Չե՛ք եղել: Կասեք, թե այդ տեղերը կարելի է մեքենայո՞վ էլ գնալ: Իհարկե, բայց ի՞նչ հետաքրքրություն... Իսկ եթե նավակ շինենք ու սկսենք շրջել լճի շուրջը, կանգ առնենք ամեն քաղաքի ու գյուղի մոտ, լուսանկարենք, գրի առնենք զանազան դեպքեր՝ ա՛յ դա կլինի հետաքրքիր ճանապարհորդությո՛ւն...

Ես այնպես համոզիչ էի խոսում, որ տղաների՝ դեմքերից իսկույն վերացավ քմծիծաղը: Նրանք նորից զարմանքով իրար նայեցին, ապա Սաքուլը ծոր տվեց.

— Ճիշտ որ, է՛...

Այնինչ Սաքոն դեռ չէր կարողանում հաշտվել այդ մտքի հետ:

— Ախր ո՞նց կլինի՝ Խաղաղ օվկիանոսի տեղ Սևան...Ո՛չ շնաձուկ կա, ո՛չ ութնոտնուկ, ո՛չ թռչող ձկներ...

Այս անգամ նրա վրա հարձակվեց Սաքուլը.

— Իսկ ինչնեի՞ս են պետք քո ութնոտնուկն ու շնաձուկը: Կարթով իշխան կբռնենք, ճաշ կպատրաստենք, կլողանանք, գիշերները հերթապահ կկանգնենք՝ այսքանն էլ բավական է... —Ու իսկույն շրջվեց իմ կողմը:—Միայն թե այդ նավակի հարցը... Ախր, նա այնքան մեծ պիտի լինի, որ երեք հոգի օրերով մեջն ապրեն... Ինչպե՞ս պիտի սարքենք: Ինչի՞ց: Եվ ո՞նց հասցնենք Սևան:

Ես դրա մասին, իհարկե, բոլորովին չէի մտածել, բայց այդ րոպեին չէի ուզում խոստովանել: Բավական էր, որ հաղթեցի նրանց, ստիպեցի ոգևորվել իմ առաջարկով:

— Դա, ինչ խոսք, հեշտ բան չի, բայց դե որ ուզենանք՝ կանենք...

Ու այստեղ նորից միջամտեց Սաքոն:

— Մեծ ու թեթև նավակ սարքելը բոլորովին էլ բարդ բան չի... Բայց թե, ախր... օվկիանո՛ս ու Սևան...

Մենք իսկույն վրա պրծանք, պահանջելով, որ նա հանգիստ թողնի օվկիանոսը և բացատրի, թե այդ ինչպե՞ս կարելի է մեծ ու թեթև նավակ



digitised by A.R.A.R.@

պատրաստել: Նա էլ ասաց, թե իր քեռու տղայի մոտ մի գրքույկ է տեսել, որտեղ նկարագրված է՝ ինչպես վոլեյբոլի կամերաներից փչովի թեթև նավակ սարքել: Այդպիսի նավակը կարելի է մաս-մաս բաժանել, հեշտությամբ փոխադրել լճի ափն ու այնտեղ հավաքել:

Մենք շտապով ուղարկեցինք Սաքոյին այդ գըրքույկը բերելու, և երեկոյան, գլուխ-գլխի տված, արդեն ուսումնասիրում էինք նավակի գծագրերը:

Թղթի վրա դա իսկապես դժվար բան չէր: Ռետինապատված կամ սովորական պինդ կտորից կարվում է ծվածև մի «երշիկ», որի մեջ տեղադրվում են վոլեյբոլի կամերաները: «Երշիկին» հաստատուն ձև տալու համար՝ ներսի շրջագծի չափերով փայտյա ծողերից հիմնակմախք է սարքվում, որը ծածկվում է մոմլաթից կամ նույնպես ռետինապատված կտորից կարված տաշտակաձև տոպրակով: Ահա և նավակը պատրաստ է:

Բայց մենք հենց սկզբից որոշեցինք, որ մեր նանապարհորդության համար այդ նավակը շատ հասարակ է: Նախ, հարկավոր էր մեծացնել նավակը, հասցնելով կամերաների թիվը մոտ երեսուն հատի: Հետո վճռեցինք հիմնակմախքի տակ ողնափայտ դնել, որը հաստատուն կդարձնի նավակը և կթեթևացնի ղեկավարումը: Ապա՝ կայմ ու առագաստ սարքել, ղեկ դնել և այլն...

Ահա թե ինչպես մենք վճռեցինք նավակ սարքել: Եթե ես չտայի Սևանի շուրջը նանապարհորդելու միտքը, չհամոզեի տղաներին՝ երբեք և ոչ մի նավակ չէր սարքվի և հիմա մարդիկ զարմանքով ու հիացմունքով հարցեր չէին տա.

— Իսկ ի՞նչ եղավ ձեր մյուս ընկերը...

Այդ հարցը ստիպեց ինձ սթափվել մտքերից և նորից ականջ դնել խոսակցությանը:

Ինչպե՞ս խոսքը հասավ դրան... Ջինի՞ Նրանք տեսել են ինձ և, խայթելու համար, պատմել, թե ինչպես հեռացա իրենցից:

Այդ մտքից ես քիչ էր մնում խուսափելով փախչեի ծառի մոտից, երբ ականջիս հասավ Սաքուլի պատասխանը.

— Նրանց ընտանիքը փոխադրվեց ուրիշ քաղաք...

Ջէ՛, ուրեմն չեն նկատել... Սաքոն, գլուխը կախ, փստացնում է իր օդամուղը, իսկ Սաքուլը տարված է զրույցով... Բայց ամենից կարևորն այն է, որ նրանք մտադիր չեն ուրիշների մոտ ինձ մեղադրել, վատ խոսել իմ մասին: Հը՛մ, ես նրանցից այդպիսի բան չէի սպասում: Համոզված էի, թե հիմա ամեն տեղ անունս գետնովն են տալիս, հայհոյում ու խայտառակում ինձ...

Իհարկե, իմ հեռանալով ես, քիչ էր մնում, ծախողեի նավակի կառուցումը: Բայց, ազնիվ խոսք, այն ժամանակ ես կարծում էի, թե դրանից ոչինչ չի ստացվի և մենք իզուր ենք տանջվում...

Երբ մենք բոլոր մանրամասնություններով գըծագրեցինք նավակը, տեսանք, որ անհագին քանակությամբ նյութեր պիտի գնենք. կամերաներ, կտորեղեն, տախտակ ու ֆաներա, ներկ ու թոկեր, մեխ ու պտուտակներ, հեծանիվի օդամուղ և այլ գործիքներ... Իսկ դրա համար փող էր պետք, մի խոշոր գումար:

Եվ ահա, մենք վճռեցինք ծմեռվա ընթացքում քիչ-քիչ հավաքել այդ գումարը: Կինո ու կրկես չէինք գնում, կոնֆետ ու թխվածքներ չէինք առնում, և ծեռքներս ընկած ամեն մի կոպեկը տալիս էինք Սաքուլին, որը մեր գանձապահն էր: Իսկ հակառակի պես այդ ծմեռ այնպիսի ֆիլմեր էին ցույց տալիս որ... Մեր դասընկերներն ամեն օր դպրոցում պատմում էին այս կամ այն նոր ֆիլմի մասին, իսկ մենք լռում էինք, որովհետև չէինք տեսել: Եվ դա ինձ բոլորովին չէր դուր գալիս: Ես չեմ սիրում ուրիշների առաջ խեղճանալ, զգալ, որ նրանք ինձնից ինչ-որ բանով առաջ են ընկել...

(Շարունակելի)



# ՋԵԼՍՈՄԻՆՈՆ ԽԱԲԵԲԱՆԵՐԻ ԱՇԽԱՐՀՈՒՄ



ՋԱՆՆԻ ՌՈԴԱՐԻ

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

## ԳԼՈՒԽ ՏԱՍՆՎԵՑԵՐՈՐԴ

Ինչպես ձեզ հայտնի է, աշխարհում ճակատագրի գիրք գոյություն չունի։ Այնպիսի մի գիրք չկա, ուր գրված լինեն գալիք բոլոր իրադարձությունները։ Նման մի գիրք գրելու համար ամենաքիչը պետք էր լինել «Օրինակելի խաբեբա» թերթի գլխավոր խմբագիրը։ Մի խոսքով, այդպիսի գիրք չկա և չկար նույնիսկ Ջակոմոն Թագավորի օրոք։

Եվ ափսո՜ս որ չկար։ Եթե այդպիսի գիրք լիներ, խեղճ կեղծամավոր Թագավորը կարող էր այն օրը բաց անել ու կարդալ. «Այսօր Ջակոմոն Թագավորը ճառ չի ասի»։

Եվ իրոք, այն ժամանակ, երբ նա սպասում էր, որ ծառաները կբացեն ապակե դռները ու ինքը կհայտնվի պատշգամբում, Ջելսոմինոյի ձայնն սկսեց իր գործը տեսնել՝ ջարդուփշուր եղան ապակե դռներն ու ապակու մանր կտորների անձրև տեղաց հատակին։

— Զգու՜յշ եղեք,— գոռաց իր ծառաներին Ջակոմոնը, բայց այդ ժամանակ նրա սենյակից ես ջարդվող ապակու ձայն լսվեց։

— Դա հայելի՜ն է,— գոռաց Ջակոմոնը։— Ո՞վ ջարդեց իմ հայելին։

Նորին մեծությունը զարմացած նայեց շուրջը՝ այդ ինչու՞ իրեն՝ չեն պատասխանում։ Բայց, ավա՜ղ։ Նրա թիկունքում ոչ ոք չկար։ Նախարարները, ծովակալները, սենեկապետները և բոլոր պալատականները իրենց առաջին ազդանշանը, այսինքն՝ Ջելսոմինոյի վերցրած առաջին բարձր ձայնանիշը լսելով, նետվեցին իրենց սենյակները՝ հագուստները փոխելու։ Նրանք, առանց ավելորդ խոսքի, ուղղակի հատակին էին նետում շքեղ հագուստները, որ այդքան տարի կրել էին, և մահճակալների տակից հանում էին հին ճամպրուկները, ուր պահում էին ծովահենի իրենց շորերը։

Սկիզբը՝ նախորդ համարում։

— Եթե աչքիս սև ժապավեն չկապեմ, ինձ դռնապանի տեղ կդնեն։

— Եթե թեքիս վրայի խաբխսխը հանեմ, ոչ ոք ինձ չի ճանաչի,— փնթփնթում էին նրանք։

Ջակոմոնի մոտ մնացել էին միայն նրա այն երկու ծառաները, որոնք պարտավոր էին բաց անել պատշգամբ տանող ապակե դռները։ Նույնիսկ հիմա, երբ դռները ջարդվել էին, նրանք հարգանքով բռնել էին դրան բռնակները և մերթ ընդ մերթ սրբում էին իրենց նախշուն բազկակալներով։

— Դու՞ք էլ գնացեք,— հառաչեց Ջակոմոնը։— Միևնույն է, շուրջս ամեն բան փուլ է գալիս։

Եվ իսկապես, հենց այդ պահին փշրվեցին հրա-



կայական ջահի հազարավոր լամպերը։ Երևում էր, որ Ջելսոմինոն այդ օրը կատակ չի անում։

Ծառաները իրենց երկար սպասել չտվեցին։ Ետ-ետ գնալով և ամեն երեք քայլից հետո խոնարհվելով՝ նրանք հասան մինչև սանդուղքի վրա բացվող դուռը և, կարծես թե խոսքները մեկ արած, բազրիքով ցած սլացան, որպեսզի շուտ հայտնվեն ներքևում։

Ջակոմոնը գնաց իր սենյակը, հանեց Թագավո-



digitised by A.R.A.R.@

բական շորերն ու հագավ հասարակ քաղաքացու հագուստ։ Դա շագանակագույն մի կոստյում էր, որ կսազեր գանձապահի կամ փիլիսոփայության պրոֆեսորի։

Նա ճամպրուկը ձեռքին՝ աստիճաններով իջավ ցած, բայց ոչ թե նկուղ, ինչպես արեցին նրա պալատականները, որոնք մկների նման պալատից փախչում էին կոյուղու խողովակներով։ Ջակոմոնը գերադասեց մտնել իր սքանչելի այգին, որտեղից դուրս եկավ նրբանցք և, համոզվելով, որ ոչ ոք



իրեն չի նկատել, անցավ հրապարակ և խառնվեց Ջելսոմինոյին ծափահարող ամբոխին։

— Դուք, երևի, եկվոր եք,— բարեկամաբար նրա ուսին խփելով՝ հանկարծ հարցրեց մեկը։— Եկեք լսե՛ք տենոր Ջելսոմինոյին։ Տեսնո՞ւմ եք, ա՛յ այնտեղ է նա։ Տեսքից նա գրոշ չարժե, բայց տեսնո՞ւմ եք ինչ ձայն ունի։

— Տեսնում եմ, տեսնում,— մրթմրթաց Ջակոմոնը։

Այո, նա տեսավ, թե ինչպես է փուլ գալիս իր սիրելի պատշգամբը և ինչպես է ավերվում պալատը՝ փոշու հսկայական ամպեր բարձրացնելով երկինք, և որոշեց իր կյանքին վերջ տալ։ Նա գնաց դեպի գետը, բայց տեղ հասնելով միտքը փոխեց և ճամպրուկը բացելով, սկսեց իր կեղծամները մեկ-մեկ ջուրը գցել։

— Գնաք բարո՛վ, իմ փոքրի՛կ խաբեբաներ,— շշնջաց նա։

Բայց կեղծամները չխորան։ Հենց նույն օրը երեխաները ջրից հանեցին դրանք, արևի տակ չորացրեցին և դնելով գլուխներին, ուրախ թատրոն կազմեցին։ Նրանք ծիծաղում էին ու երգում, չկասկածելով, որ դրանով Ջակոմոնի թագավորության թաղման ծեսն են կատարում։

Ջելսոմինոն իր ահեղ երգն ավարտելով, ճակատի քրտինքը սրբեց ու ասաց.

— Սրա հաշիվները մաքրվեցին։

Իսկ ամբոխը գոռում էր.

— Սյո՛ւնը, սյո՛ւնը... պետք է սյո՛ւնն էլ կործանել։

— Իսկ ինչու՞։

— Չէ՞ որ նրա վրա փորագրված են Ջակոմոն թագավորի արշավանքներն ու սխրագործությունները։ Դա նույնպես խաբեություն է։ Ջակոմոնն իսկի իր քիթն էլ պալատից դուրս չի հանել։

— Լա՛վ,— ասաց Ջելսոմինոն,— ես այդ սյան համար մի այնպիսի գիշերերգ երգեմ, որ նրանից բան չմնա։ Միայն թե հեռո՛ւ գնացեք, թե չէ տակը կմնաք։

Սյանը մոտիկ կանգնած մարդիկ շտապ հեռացան և այստեղ Ջելսոմինոն սյան վրա տեսավ իրեն այնքան ծանոթ երեքոտանի կատվի նկարը։

— Կաղլի՛կ,— բացականչեց նա, և նրա սիրտը միանգամից թեթևացավ։

Նկարը ցնցվեց, ծամածվեց, բայց հետո նորից հանդարտվեց։

— Կաղլի՛կ,— ավելի բարձր կանչեց Ջելսոմինոն։ Այս անգամ Կաղլիկ-կատուն պոկվեց սյունից և կաղալով թռավ ցած։

— Ինչքա՜ն ուրախ եմ, ինչքա՜ն ուրախ եմ,— մլավում էր նա և համբուրում Ջելսոմինոյի այտերը։— Դու որ չլինեիր, ես այդպես էլ կմնայի այս սյան վրա, մինչև որ անձրևները ինձ վերջնականապես կջնջեին։ Բոլորը գիտեն, որ ես մար-

digitised by A.R.A.R.@

քանի եմ, բայց երբեք չէի ուզենա այդքան շատ լողանալուց մեռնել։

— Իսկ ես ինչի՞ համար եմ,— լսվեց Բանանիտոյի ձայնը, որը արմունկներով իր համար ճանապարհ բացելով, վերջապես մոտեցավ բարեկամներին։— Եթե քեզ այդպիսի դժբախտություն պատահի, ես նորից կնկարեմ քեզ և դու առաջվանից ավելի գեղեցիկ ու ավելի լավ կլինես։

Մեր այս երեք ընկերները, որ հենց նոր հանդիպեցին, այնքան բան ունեն իրար պատմելու, որ ավելի լավ է հանգիստ թողնենք նրանց։

Իսկ մյուսնե՞րը։

Ու՞մ կարող է խանգարել այսօր։ Նրա վրայից սուր մարդկանց կնճռեցին այն ժամանակները, երբ երկիրը ղեկավարում էր անամոթ մի տնտեսան, և բավական էր մի լավ երգված երգ, որպեսզի նրա թագավորությունը ծուխ ցնդեր։

Ռուսերենից թարգմանեց և համառոտեց՝
Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

# ՇԼԴԻԿԸ ՏՈՒՆ Է ՇԻՆՈՒՄ

Ա. ՄԵԼՈՒԶՆԻԿՈՎ

Անտառն ահա խշշում է խուլ.
Շուրջը՝ խոնավ, դալուկ աշուն։
Բացատի մեջ Շլդիկն անդուլ
Գերաններ է կտրում-տաշում։
Մի դրա՛ն տես. կացինն առած,
Կրակ դառած,
Հագին՝ հյուսնի կաշվե գոգնոց,
Ձեռքին՝ ծեռնոց,
Տաշտշում է, հղկում համառ,
Տուն է շինում ինքն իր համար։

— Ճա՛փ-շա՛փ, շա՛փ-շա՛փ...—
Չարկում է նա համաչափ,
Չորս բոլորը, տե՛ս, մի տե՛ս,
Տաշեղների ողջ մի դեզ...
Ահա շարված են շարք-շարք,
Սյուն ու հեծան ու տախտակ։

Եվ վարպետը ինքնագոհ
Շոյելով չեկ բեղերը,
Մատիտն առած նշում է
Հեծանների տեղերը։
Ու սրբելով քրտինքը՝
Երգ է ասում Շլդիկը.
— Բրդոտ եմ ես,
Սրտոտ եմ ես,
Ես վազան եմ,
Քաջ գազան եմ,
Տքնաջան եմ, հետն էլ՝ քաջ.
Շինարար եմ,
Տնարար եմ,
Սիրտս ուրախ է, գործս՝ աջ։
Ձմեռն արդեն մոտ է, մոտ.
Պետք է բանեմ կրակոտ.
Դեռ շատ բան կա անավարտ՝
Դուռ, պատուհան, միջնապատ,
Կտուր, ծխան, վառարան,
Արհեստանոց ու մառան...

Ցուրտ է արդեն, ձմեռնամուտ,
Արդեն ջուրն է սառույց կապել,
Իսկ վարպետի ձեռքով հմուտ
Շենքն օրեցօր ելնում է վեր։

Փոխադրեց՝ Հ. ՀԱԲՅԱՆ

Նկ. ՎԱԶԳԵՆ ԳԱԲՐԻԵԼՅԱՆԻ





digitised by A.R.A.R.@

## 150 տարի



# ՄԵԾ ԿՈԲԶԱՐԸ

Ծանր էր ճորտի լուծը: Նրան կարող էին վաճառել, կարող էին փոխանակել, առանց իր տիրոջ թույլտվության, նա չէր կարող մի քայլ անգամ անել: Ճորտ երեխան իրավունք չուներ սովորելու:

Սակայն լինում էին նաև հազվագյուտ բացառություններ: Կամ փառասիրությունից դրդված, կամ էլ նրա համար, որ մյուս ճորտերի աչքում հոգատար երևան, կալվածատերերից ոմանք ճորտ երեխաներից առավել ընդունակներին որոշում էին ուսման տալ: Հազարից մեկին էր այդպիսի բախտ վիճակվում, և դրանցից էր Տարաս Շևչենկոն:

Շատ ընդունակություններով էր օժտված փոքրիկ Տարասը, բայց ամենից լավ նա նկարում էր: Թուղթ ու մատիտ, ինչ խոսք, նա չուներ, բայց նկարում էր ամեն ինչի վրա. ածուխով՝ պատերին, փայտի կտորով՝ թաց հողին, մատներով՝ ավազին: Երեխայի անպաճույճ նկարները հետաքրքրում էին մեծերին ու փոքրերին: Նրանք ծիծաղում էին՝ տեսնելով այդ նկարները, ու խրախուսում տղային: Հենց նկարչական ընդունակություններն էլ պատճառ դարձան, որ նա ընկնի Պետերբուրգ, սովորի Գեղարվեստի Ակադեմիայում:

Բայց նա Պետերբուրգում կարոտում էր իր հարազատներին, հայրենի Ուկրաինայի մեղմ բնությանը, նրա խաղաղ երկնքին: Նա չէր կարողանում մոռանալ այն չարքաշ կյանքը, որ բաժին էր ընկել իր ժողովրդին: Եվ ահա նա սկսեց բանաստեղծություններ գրել նրանց մասին, ովքեր իրենց մեջքը ծռում էին կալվածատերերի ու պաների համար, աշխատում գիշեր-ցերեկ և զուրկ էին մնում բարիքներից:

Ու նա կոչ էր անում, որ լինեն բոլորը միասին, կտրեն շղթաներն ու ազատություն ձեռք բերեն: Նա ասում էր, որ ինքնակալությունը բանտ է ժողովրդի համար, ու կոչ էր անում կացնի միջոցով հասնել ազատության:

Բայց ծանր ժամանակներում էր ապրում Շևչենկոն: Ցարը չէր ներում նրանց, ովքեր ելնում էին իր դեմ, ու դրա համար էլ մեծ բանաստեղծը տասը տարի մնաց աքսորավայրում՝ հեռավոր ասիական տափաստաններում:

Նիկոլայ Առաջին թագավորը հրամայել էր թույլ չտալ, որ Շևչենկոն աքսորավայրում գրի ու նկարի, բայց նա աքսորում եղած տարիներին գրեց հեղափոխական ուժով տոգորված գործեր: Եվ ուրիշ կերպ էլ չէր կարող, որովհետև աքսորի ծանր տարիներին նա միշտ էլ զգում էր իրեն իր ժողովրդի հետ: Ժողովրդի անմխիթար վիճակը հանգիստ չէր տալիս նրան:

Բայց իզուր էին ցարի ջանքերը: Ով ծառայում է իր ժողովրդին, միշտ էլ կմնա նրա մեծ սրտում: Այդ է պատճառը, որ Ուկրաինայի մեծ բանաստեղծը հիմա ոչ միայն սիրվում ու մեծարվում է Ուկրաինայում, այլև մյուս բոլոր հանրապետություններում և Սովետական Միության սահմաններից դուրս: Այժմ նրա ծննդյան 150-ամյակը տոնում է ամբողջ աշխարհը:





digitised by A.R.A.R.@



# ՊԱՇԿԱՅԻ ՈՒՍՈՒՑԻՉԸ

*Ա. ՊԱՐԽՈՄԵՆԿՈ*

*Նկ. ԱԼԵՔՍԱՆԴՐ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ*

Կիրակի էր։ Օրենբուրգի կայազորի եկեղեցում ղողանջեցին զանգակատնից եկող դողդոջուն հնչյունները։ Այն զինվորները, որոնց պետերը քարեհաճել էին ժամերգությունից հետո մի քանի ժամով ազատ արձակել, շտապեցին դուրս գալ փողոց։ Մյուսները նախանձով նայեցին նրանց հետևից և նոթերը կիտած՝ քայլերն ուղղեցին դեպի զարշահոտ զորանոցները։

Շարքային Շևչենկոն, անցնելով ցանկապատը, առանց շտապելու դուրս եկավ Ուրալի բլրաշատ ափը։ Գետը, որ երկու շաբաթ առաջ էր ազատվել սառցե կապանքից, ձնհալի հորդառատ ջրերից այժմ ավելի լայն ու հզոր էր թվում։

Վրայից նետելով ծանր շինելը, Շևչենկոն նստեց ուղղակի գետնին։ Գետի մյուս կողմում փռված էր ամայի ու անպարփակ տափաստանը, որ հասնում էր մինչև Արալ։ Այնտեղ, անմարդաբնակ այն վայրում, որտեղից նա վերջերս էր վերադարձել, նույնպես հեշտ չէր, բայց այնուամենայնիվ նա կարողանում էր մատիտ վերցնել ձեռքը, իսկ այստեղ... Պետերբուրգից թուղթ էր եկել, որտեղ ցարական չինովնիկները մերժել էին Տարասի խնդրանքը։ Դրությունն ավելի էր ծանրացել. նորից խստագույն հսկողություն էր սահմանվել, որպեսզի նա չհամարձակվի ո՛չ գրել և ո՛չ էլ նկարել։

Հորդառատ Ուրալը աքսորականին հիշեցնում էր Դնեպրը, հեռու-հեռավոր ու հարազատ վայրերը, որոնց նա այնպե՜ս սրտագին կարոտել էր։

Շևչենկոյին այդ մտածմունքներից դուրս բերեց մի խշխշոց, որ գալիս էր մոտակա ուռենիների միջից։ Բարձրացնելով գլուխը, նա տեսավ, թե ինչպես ուռուտից դուրս եկավ պատառոտված շորերով մի տղա և, առանց իրեն նկատելու, նստեց մի կոճղի։ Զինվորին հետաքրքրեց, թե ինչ է անում տղան։ Մի քանի րոպե սպասելուց հետո, Տարասը ոտքի ելավ և հետևի կողմից կամաց մոտեցավ նրան։ Տղայի ծնկների վրա դրված էր մի կտոր թուղթ, իսկ ձեռքին կար մատիտի մի փոքրիկ կտոր։ Վերանալով աշխարհից, նա ոգևորված նկարում էր քաղաքային գորշ շինությունները, որ հասնում էին մինչև գետը և անդրադարձել էին ջրի մեջ, ապա սպիտակ ամպեր, որ ասես քարացել էին երկնակամարում։

— Բարի օ՛ր, մանչո՛ւկ,— հուզմունքով ասաց Տարասը։

Տղան, հանկարծակիի գալով, ցնցվեց նստած տեղում և վճիտ աչքերը հառեց զինվորին։

— Բարև՛ ձեզ,— պատասխանեց տղան և սկսեց արագորեն փաթաթել թուղթը։

—Այդ ի՞նչ ես անում։ Ինչո՞ւ ես թաքցնում նկարածդ,— քնքշությամբ ասաց Տարասը և նստեց տղայի կողքին։ Հապա մի տեսնեմ։

Պատանի նկարիչը մի պահ տատանվեց. գուցե զինվորը պարապությունից որոշել էր ծիծաղել իր վրա։ Բայց հանդիպելով Տարասի խորաթափանց ու ժպտուն հայացքին՝ նրան մեկնեց նկարը։

Զինվորը երկար ժամանակ ուշադիր նայեց թղթին, ապա մի հայացքով ընդգրկեց ընապատկերը և, այն համեմատելով նկարի հետ, ասաց.

— Կեցցե՛ս, տղաս ... Կեցցե՛ս։ Միայն թե... ո՛չ այստեղ... հապա մատիտդ ինձ տուր։

Տղան հմայված նայում էր զինվորի կոշտ ու կոպիտ ձեռքի վարժ շարժումներին։ Տարասը արագ կերպով ուղղեց նկարը։ Թվաց, թե նա մատիտով միայն կպցրեց թղթին, տեղ-տեղ ավելի սևացնելով ու ընդգծելով նկարածը։ Բայց դրանից նկարը միանգամից փոխվեց, լավացավ։

— Անունդ ի՞նչ է,— հարցրեց Տարասը, հայացքը չկտրելով նկարից։

— Պաշկա... Ռյաբինկով։

— Իսկ վաղո՞ւց ես նկարում։

— Վաղո՜ւց, երբ հայրս դեռ կենդանի էր։ Նա ուզում էր ինձ մի տեղ սովորելու տալ, բայց մեռավ...

— Իսկ դու ի՞նչ ես անում հիմա։

— Եղբորս մոտ եմ ծառայում. գուցե լսե՞լ ես... ջրապացում։

— Ո՛չ, չեմ լսել։ Իսկ ի՞նչ աշխատանք ես կատարում։

— Ինչ որ հրամայեն...



digitised by A.R.A.R.@

— Հաճա՞խ ես նկարում,— կարճատև լռությունից հետո՝ նորից հարցրեց Տարասը։

— Որտեղի՜ց։ Մեկ-մեկ, միայն կիրակի օրերին։

Տարասը մտաբերեց այն օրը, երբ բարի մարդիկ իրեն դուրս բերեցին ճորտի անազատ վիճակից և տեղավորեցին Գեղարվեստի ակադեմիայում։ Ու թեև նա հիմա դիմանում է դաժան տանջանքներին, բայց հո մինչև չի՞ մնալու աքսորում։ Իսկ ո՞վ կօգնի Պաշկային։

— Իսկ դուք ո՞վ եք, քեռի՛։

Տղայի հարցը սթափեցրեց Տարասին։

— Զինվոր եմ, ինչպես տեսնում ես։

— Մի՞թե զինվորները կարող են այդպես նկարել։

— Ուրեմն կարող են, Պա՛շկա,— ձեռքը տղայի ուսին դնելով՝ ասաց Տարասը և լուրջ արտահայտությամբ ավելացրեց.— Զինվոր դառնալուց առաջ ես նկարիչ էի։ Եթե ուզում ես, ես կլինեմ քո ուսուցիչը։ Կիրակի օրերին այստեղ արի, ես քեզ կսովորեցնեմ։

Տղայի աչքերը փայլեցին ուրախությունից...

* * *

Շևչենկոն մտամոլոր ու մտազբաղ վերադառնում էր կայազոր, խորհելով այն մասին, թե ինչ անի, որ Պաշկային դուրս բերի լավ ճանապարհ։

— Կանգնի՛ր,— համարյա նրա ականջի մոտ հանկարծ գոռաց մեկը։

Տարասը վեր բարձրացրեց աչքերը. նրա առաջ կանգնած էր Իսաևը։ Մտքերով տարված զինվորը չէր նկատել սպային։

— Մեղավոր եմ, ձերդ բարեծննդություն,— ձգվեց շարքային Շևչենկոն։

— Մե-ղա-վո՜ր,— ատամների արանքից նետեց Իսաևը։— Ինչո՞ւ բաճկոնդ կոճկված չէ։ Որտե՞ղ էիր։

— Զբոսնում էի, ձերդ բարեծննդություն,— և սկսեց կոճկել բաճկոնը։

— Էլի գրո՞ւմ ես, էլի նկարո՞ւմ։ Ի՞նչ կա գրպաններումդ։

— Ոչինչ,— և Տարասը շուռ տվեց գրպանները։

— Տես հա՜,— սպառնաց հիասթափված սպան։ Նա կարծում էր, թե հսկողության տակ գտնվող զինվորի մոտից կհանի թուղթ ու մատիտ և դրանով դուր կգա իր պետերին։

Բայց շուտով Տարասին ավելի մեծ դժբախտություն էր սպասում։

Արալյան էքսպեդիցիայից հետո, նա դեռ որոշակիորեն կցված չէր որևէ ստորաբաժանման և ապրում էր ոչ թե զորանոցում, այլ՝ առանձին բնակարանում։ Եվ ահա, երբ նա մտնում էր իր տունը, հանկարծ տեսավ Ֆյոդոր Լազարևսկուն, իր հայրենակցին ու բարեկամին, որը չինովնիկ էր այդտեղ։ Հուզված բարեկամը նետվեց Տարասին ընդառաջ և, մոռանալով նույնիսկ բարևել, շշնջաց.

— Վաղ առավոտից քեզ եմ փնտրում։ Դժբախտությո՜ւն։

— Ի՞նչ դժբախտություն, Ֆյո՛դոր Մատվեիչ։

— Իսաևը լուր է հասցրել գեներալ-նահանգապետին, թե դու գրում ես ու նկարում... Այրի՛ր՝ ինչ որ ունես, ուր որ է, քեզ մոտ խուզարկության կգան։

— Անհա թե ի՜նչ,— կամաց ասաց Շևչենկոն, շտապելով դեպի իր բնակարանը։— Դրա՞ համար նա փողոցում խուզարկեց գրպաններս։

Դուռը փակելուց հետո, Շևչենկոն բոլոր թաքստոցներից սկսեց դուրս բերել ձեռագրերը, նամակներն ու նկարները։ Ընտրելով այն ամենը, ինչ ավելի արժեքավոր էր, դրանք հանձնեց իր բարեկամին։

— Թաքցրո՛ւ մի որևէ տեղ։ Միայն թե ոչ տանը, կարող է քեզ մոտ էլ խուզարկության գան։ Իսկ մնացածը՝ կրակի մեջ։

Լազարևսկին ուզում էր վառարան նետել վերջին փաթեթը, բայց Տարասը թույլ չտվեց։

— Սպասի՛ր, սիրելի՛ս, եթե բոլորն այրենք, գլխի կընկնեն, որ ինձ նախազգուշացրել են։ Կըսկսեն փնտրել մեղավորին։ Շներին ոսկոր թող, որ կրծեն,— և նա ճամպրուկի մեջ կոխեց մի քանի տրորված թուղթ։

Երեկոյան կողմ, երբ նրանք դուրս եկան բնակարանից և թեքվեցին անկյունը, տեսան, որ ոստիկանապետի կառքը գալիս էր ուղիղ դեպի Տարասի տունը...





digitised by A.R.A.R.@

* * *

Հետևյալ կիրակի օրը Պաշկան սպասեց մինչև կեսօր, բայց ուսուցիչը չեկավ։ Փորձեց նկարել, բայց սիրելի զբաղմունքն անգամ չէր կարող նրան գրավել։ Անվերջ մտածում էր այն մասին, թե ինչու չկա զինվոր-նկարիչը։

Իսկ երբ ուսուցիչը չեկավ ո՛չ երկրորդ և ո՛չ էլ երրորդ կիրակի օրը, Պաշկան չգիտեր ինչ աներ, նրա համար առկայծեց հույսի մի շող և հիմա նորից մարում էր։

Ամեն շաբաթ կայազորի մթերային պահեստից Բեղբոլի ջրաղացն էր գալիս ծեր զինվոր Պոտապիչը։ Նա ալյուր էր տանում ջրաղացից։ Մի օր Պաշկայի մտքով անցավ նրանից իմանա այն տարօրինակ նկարիչ-զինվորի մասին։

— Բարի օ՛ր,— մոտենալով մենակ կանգնած Պոտապիչին, ասաց Պաշկան։

— Բարի ողջո՜ւյն,—գրեթե գոռալով պատասխանեց ծեր զինվորը և կատակի համար զգաստ կանգնեց տղայի առաջ։ Բայց տեսնելով, որ Պաշկան կատակի տրամադրություն չունի, հարցրեց.— Ի՞նչ է պատահել, աչքիս մի տեսակ ես երևում։

— Ոչինչ էլ չի եղել,— ակամայից ժպտաց Պաշկան։

— Գործերդ ինչպե՞ս են, նկարի՛չ ախպեր։

— Ինձանից ի՜նչ նկարիչ... Այ, ասում են, ձեզ մոտ մի զինվոր կա, որն իսկական նկարիչ է։ Դուք ճանաչո՞ւմ եք նրան։

— Ինչո՞ւ չեմ ճանաչում,— ծոր ծվեց Պոտապիչը և, խոր ներս քաշելով ծխախոտի ծուխը, հառաչեց.— Շևչենկոյի մասի՞ն ես հարցնում։

— Նրա մասին,— համաձայնեց Պաշկան, թեև ինքը չգիտեր իր ուսուցչի ո՛չ անունը, ո՛չ էլ ազգանունը։

— Շևչենկոյին վերջերս բանտ նստեցրին,— տխուր աչքերով նայելով Պաշկային՝ ասաց ծեր զինվորը։

Տղան ասես քարացավ կանգնած տեղում։ Ապա ուշքի գալով, հարցրեց.

— Իսկ ինչի՞ համար բանտարկեցին նրան։

— Է՜հ, Պա՛շկա, չգիտեմ, թե ինչպես ասեմ, որ դու հասկանաս,— և Պոտապիչը զգուշորեն նայեց շուրջը։— Նա սովորական զինվոր չէ։ Ասում են, լավ ոտանավորներ ունի գրած, և բոլորը տերերի ու հենց ցարի դեմ...

Պաշկան լսում էր Պոտապիչին և շատ ափսոսում, որ ինքը բախտ չունեցավ երկրորդ անգամ տեսնելու բարի ու թախծոտ աչքերով այն լավ մարդուն...



* * *

Վերջացավ օրենբուրգյան շոգ ամառը։

Բեղբոլի ջրաղացում գործերն այնքան շատ էին, որ Պաշկան վաղ առավոտից մինչև ուշ գիշեր շունչ քաշելու ժամանակ չէր գտնում։

Բայց ահա աղորիքում ինչ-որ բան էր ջարդվել և վարպետները առավոտից նորոգում էին։ Պաշկան թաքուն ծլկեց գետափ։

Պատանի նկարիչը վաղուց չէր եղել այդտեղ։ Ահա և այն կոճղը, որի վրա նստած էր ինքը, երբ մոտեցավ Շևչենկոն։ Գետն այժմ քաշվել էր ափերից, դարձել ավելի նեղ ու հանդարտ։

Տղան ուզում էր զբաղվել նկարչությամբ, երբ գետափից թիերի չմփոց հասավ նրա ականջին։ Նայեց ձայնի ուղղությամբ։ Մի մակույկ էր լողում հոսանքն ի վեր։ Նավախելի վրա, զենքը ձեռքին, նստել էր ենթասպա Բուլատովը։ Պաշկան ճանաչում էր նրան։ Պոտապիչը մի քանի անգամ խոսել էր այդ ենթասպայի մասին և շուն էր անվանել նրան։ Մի զինվոր էլ նստել էր թիերի մոտ և



digitised by A.R.A.R.@

*թիավարում էր, իսկ նրանց մեջտեղում նստած էր Պաշկայի ուսուցիչը... Տղայի աչքերը մի պահ շողացին երջանկությամբ, բայց անմիջապես էլ լցվեցին թախիծով: Նա հասկացավ, որ Շելենկոն հսկողության տակ է: Բայց ո՞ւր են տանում նրան: Երևի ավելի հեռու, դեպի անապատ, ամենախուլ տեղը, որպեսզի մարդիկ չլսեն նրա ձայնը:*

*Պաշկան վազեց դեպի ջուրը:*

*— Քեռի՜,— հուսահատ կանչեց նա, ձեռքերն առաջ պարզելով,— քեռի՜:*

*Շելենկոն նայեց ձայնի կողմը, ճանաչեց Պաշկային, թախծոտ ժպտաց նրան և ձայնեց.*

*— Բարև՛, Պա՛շա... Ես քո առաջ՝ սուտ դուրս եկա, ների՛ր ինձ: Երջանկություն եմ ցանկանում քեզ:*

*Նա ուզում էր էլի ինչ-որ բան ասել, բայց ենթասպան մռնչաց՝ լռել և, Պաշկային ցույց տալով իր ահավոր բռունցքը, մակույկն ուղղեց դեպի գետի մեջտեղը: Մակույկն արագ սլացավ ավելի ու ավելի հեռու:*

*Պաշկան, ասես քարացած, կանգնել էր բլրաշատ գետափին և խոր կսկիծով նայում էր նրանց հետևից, մինչև մակույկը կորավ տեսադաշտից:*

*Ռուս. թարգմ. Գ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ*

# ԱՎԱԳ ՋՈԿԱՏԱՎԱՐԸ

Մի անգամ 49-րդ դպրոցի ավագ ջոկատավարը Մուրացանի փողոցում հանդիպեց իրենց աշակերտներից Մարուքյան Սամվելին՝ մի խումբ տղաների հետ: Այդ տղաները, չի կարելի ասել, թե կարգին տղաներ էին. կանգնում էին փողոցի անկյունում և օրը անցկացնում դատարկ խոսակցություններով՝ թե ում կոշիկների ծայրերն են ավելի սուր, ում վարտիքն է ավելի սազական և ում գուլպաներն են ավելի թանկագին: Մեկ-մեկ էլ դառնում էին, ճնագնդիով հարվածում անցնող աղջիկներին, չորս մատը խրում բերանը ու ամբողջ փողոցով մեկ շվացնում:

Ավագ ջոկատավարը շատ զարմացավ՝ Մարուքյան Սամվելին ևս այդ տղաների հետ կանգնած տեսնելով: Նրան մի կողմ կանչելով՝ հարցրեց.

— Դու ինչո՞ւ ես այս տղաների հետ ժամանակ կորցնում: Ավելի լավ չէ՞ր լինի, եթե դասերըդ պատրաստեիր:

— Ես դասերս պատրաստել եմ,— պատասխանեց Սամվելը,— հիմա էլ հանգստանում եմ: Իրավունք չունե՞մ:

Ավագ ջոկատավարը հավատաց, որ Սամվելը դասերը պատրաստած կլինի, որովհետև նա լավ էր սովորում և ազնիվ տղա էր: Իսկ հանգստանալու իրավունք Սամվելը իհարկե ուներ և մանավանդ որ դասերը պատրաստել էր:

Բայց այստեղ ավագ ջոկատավարը Սամվելին բացատրեց, համոզեց, որ դասերից հետո էլ ժամանակը կարելի է անցկացնել դպրոցում և ավելի հետաքրքիր, մանավանդ՝ օգտակար, քան անկարգ տղաների հետ փողոցի որևէ անկյունում տնկվելով:

Սամվելը խոստացավ՝ մյուս օրը դասերից հետո լինել դըպրոցում:

Հետևյալ օրը Սամվելը կատարեց իր խոստումը. դասերը պատրաստելուց հետո եկավ դպրոց:

Դպրոցում շատ երեխաներ կային: Սպորտ-դահլիճում մարզվում էին թեթև ատլետները, բասկետբոլիստները կազմում էին իրենց մրցումների անցկացման օրացույցը, էստրադային նվագախմբի տղաները զընգընգացնում էին ամբողջ երկրորդ հարկի միջանցքը, իսկ պիոներական սենյակում նիստի էր հավաքվել դրուժինայի խորհուրդը:

Սամվելը ամենից շատ սիրում էր ֆուտբոլը և գրվեց ֆուտբոլի խմբակում: Առաջին պարապմունքները, ճիշտ է, դժվար էին, որովհետև մյուսներն արդեն բավական մարզված էին: Սամվելը հաճախ հոգնում էր, բայց մարզիչ Հակոբ Խաչատրյանը հուսադրում էր տղային, խոստանում, որ շուտով կխաղան իսկական, «մեծ» ֆուտբոլ:

Այնուհետև հետաքրքիր շատ գործերի մասնակցեց Սամվելը: Դրուժինայի խորհրդի որոշմամբ դպրոցում ստեղծվեցին շինարարական արտադրական բրիգադներ: Նախ ձեռնարկեցին դպրոցին կից օժանդակ մի շենքի կառուցմանը. հիմա դա մի մեծ, տուֆակերտ շինություն է, ուր տեղավորված են դպրոցի բոլոր արտադրական արհեստանոցները: Եվ ապա, Սամվելը մասնակցեց դպրոցական լողավազանի շինարարությանը: Կանաչապատեցին դպրոցի շուրջը, տնկեցին ծաղիկներ, հավաքեցին և պետությանը հանձնեցին հարյուր վաթսուն տոննա մետաղի ջարդոն:

Դպրոցում Սամվելի հետաքրքիր և օգտակար առօրյան չէր ընդհատվում նույնպես կիրակի օրերը: Մուրացանի փողոցի 113-րդ շենքի ներքնահարկում կազմակերպվեց այսպես կոչված պիոներական ակումբ. ազատ ժամերին Սամվելը մյուս



digitised by A.R.A.R.@

պիոներների հետ լինում էր այստեղ, քննարկում էին կարդացած գրքերը, պարապում էին շախմատի, սեղանի թենիսի և այլ սեկցիաներում: Ներքնահարկը շուտով դարձավ ամբողջ թաղի երեխաների հանգստի ամենասիրելի վայրը:

Ամռանն էլ պիոներների համերաշխ կոլեկտիվը չցրվեց: Սամվելն ամառը անցկացրեց դպրոցին կից կազմակերպված «սպորտային թեքումով» պիոներական ճամբարում: Վաղ առավոտից մինչև ուշ երեկո երեխաները լինում էին ճամբարում, մարզվում էին, կոփվում, մասնակցում մրցումների, սովորում էին երգեր, խաղեր, պարեր, կազմակերպում էին արշավներ հայրենի քաղաքի և բնության տեսարժան վայրերը... Լավ էր ճամբարում: Դպրոցի պիոներական դրուժինան ամռանն էլ արձակուրդ չունեցավ և գործեց կլոր տարին:

49-րդ դպրոցի պիոներական դրուժինայի լավ գործերի մասին շուտով խոսեցին ամբողջ քաղաքում, ռեսպուբլիկայում: Դրուժինան շահեց ՀԼԿԵՄ Կենտկոմի սահմանած «Լավագույն աշակերտական շինարարական բրիգադին» և ՀԼԿԵՄ Օրջոնիկիձեի շրջկոմի «Առաջավոր կոմերիտական հարվածային ջոկատին» հուշադրոշները:

Այստեղ ուրիշ դպրոցներից գալիս էին մանկավարժներ, ավագ ջոկատավարներ և պիոներներ, որպեսզի սեփական աչքերով տեսնեն, թե ինչպես է կատարվում այդ ամենը. դրուժինայում նրանց ընդունում էին սիրով, օգնում էին խորհուրդով, փորձով, հաճույքով տալիս էին անհրաժեշտ ցուցումներ:

Այժմ Սամվելն էլ մյուս պիոներների նման պատրաստվում է և շուտով կմասնակցի մի հետաքրքիր «խաղ-հավաքույթի», որի նպատակն է ի հայտ բերել դրուժինայի լավագույն պիոներական ջոկատը: Այդ նպատակով կազմվում են հատուկ ժյուրիներ, որոնք «խաղ-հավաքույթի» ընթացքում ջոկատների անդամներին քննության կենթարկեն գիտելիքների և ունակությունների ամենատարբեր բնագավառներից. քննության մեջ ամենից ավելի շատ միավոր հավաքած ջոկատը կճանաչվի լավագույնը և կպարգևատրվի:



Իսկ դպրոցի դահլիճում հենց վերջերս ծնողների մասնակցությամբ տեղի ունեցած պիոներական ֆուրատնաակ հավաքույթը երբեք չի ջնջվի Սամվելի ու այդ հավաքույթի մասնակիցների հիշողությունից: Դահլիճում լույսերը մարեցին, վառվեցին արհեստական խարույկները, և խարույկների հեքիաթային լույսի շուրջը պիոներները պարում էին, երգում, արտասանում և խաղում:

Այժմ ուսման լարված շրջան է, դրսում ձմեռ է, ձյուն: Բայց պիոներական դրուժինան, ինչպես միշտ, իր առօրյան անցկացնում է հետաքրքիր և օգտակար:

Եվ գիտե՞ք ով է այս ամենի նախաձեռնողն ու կազմակերպիչը. դպրոցի ավագ ջոկատավար Սարգիս Դարիբյանը: Ընկեր Դարիբյանը, Վորոշիլովի անվան դպրոցի նախկին սանը, այժմ արդեն հասակ առած ու թիկնեղ, սակայն պատանու կենսուրախ ու պարզ հայացքով, ջերմ, անմիջական բնավորությամբ մի մարդ, որին դպրոցում սիրում ու հարգում են թե՛ ուսուցիչները և թե՛ մանավանդ աշակերտները, մի մարդ, որը սիրում է ավելի շատ խոսել գործերի մասին, քան թե իր մասին: Եվ մենք էլ այդպես վարվեցինք:

Իսկ ինչ վերաբերում է Մարուքյան Սամվելի հետ տեղի ունեցած այդ անախորժ պատմությանը, թե իբր նա դասերից հետո փողոցում կանգնել է ինչ-որ անկարգ տղաների հետ, ապա այդպիսի բան կարող ենք հաշվել, որ բոլորովին էլ տեղի չի ունեցել, որովհետև 49-րդ դպրոցի աշակերտներից ոչ մեկին ոչ ոք չի կարող համոզել, թե դասերից հետո իր հանգիստը կարող է ավելի խելացի և օգտակար անցկացնել որևէ այլ տեղ, քան հարազատ դպրոցում:

*ԿԱՄԱՐԻ ՏՈՆՈՅԱՆ*



digitised by A.R.A.R.@

# ԹՈՒՐՔ ՏՂԱՅԻ ՑԱՆԿՈՒԹՅՈՒՆԸ

Այս դեպքը տեղի է ունեցել Սովետական Միության և Թուրքիայի սահմանի վրա: Մի անգամ մեր սահմանապահները նկատեցին մի տղայի, որը Թուրքիայից գալիս էր ուղիղ նրանց կողմը:

Փոքրիկ տղան պատառոտված շորերով էր, քաղցած տեսք ուներ և, ըստ երևույթին, վաղուց ճաշի ու ջրի երես չէր տեսել:



Այսպիսին էր Ուղուրլուն, երբ հանդիպեց մեր սահմանապահներին



Ե այսպիսին, երբ հրաժեշտ տվեց նրանց:

Սակայն ընկնելով անծանոթ, բայց իր նկատմամբ բարյացակամ վերաբերմունք ցույց տվող մարդկանց մեջ, նա ամենևին էլ ժպիտներ չէր շռայլում նրանց, այլ իրեն պահում էր տղամարդու պես:

Նա գնում էր անասնապահ հոր մոտ և մոլորվել էր: Տղան թեև տասնմեկ տարեկան էր արդեն, բայց դպրոցի երես երբեք չէր տեսել. հայրը արգելում է նրան դպրոցի մասին մտածել: Եվ ոչ միայն նրա հայրը: Գոսոֆ գավառի Յագբաշ գյուղից մի քանի ուրիշ ընտանիքներ երեխաներին դպրոց չեն տալիս. ուսման համար դրամ չունեն: Իսկ ի՞նչ է այս տղայի անունը. Ուղուրլու, ավելի ճիշտ՝ Ուղուրլու Ֆահրի Իգրիս օղլի:

Ուղեկալի պետն ինչ-որ բան ասաց զինվորներին, և նրանք Ուղուրլուին բաղնիք տարան, մի լավ լողացրին, մազերը կտրեցին, նոր շորեր հագցրին և կերակրեցին:

— Ուղուրլու՛, ամենից շատ ի՞նչ կուզենայիր ունենալ,—հարցրին նրան սահմանապահները:

Ուղուրլուն մտածեց և ասաց.

— Մատիտ... նկարելու մատիտ...

Ստիպված եղան մի քիչ էլ պահել Ուղուրլուին՝ մոտակա ավանից նկարչական ալբոմ և գունավոր մատիտներ գնելու համար:

Այս բոլորից հետո Ուղուրլուին տարան սահմանագծի մոտ ու բարի ճանապարհ մաղթեցին նրան, և նա գնաց:

Ի. ՄԵՍԻՍ



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջում՝ ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ «Թող որ միշտ արև լինի» նկարը:


Խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ԱԼ. (գեղարվեստական խմբագիր), ԷՍԱՅԱՆ Վ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Լ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Ռ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ Վ., ՕՀԱՆՅԱՆ Ա.

„Пионер“ на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир банаки, № 41.
Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06:

ՎՖ 07562: Պատվեր՝ 210: Տպաքանակ՝ 17.850: Տպագրական 5 մամուլ: Ստորագրված է տպագրության 3/III 1964 թ., ՀՍՍՌ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության պոլիգրաֆկոմբինատ: Երևան, Տերյան փ., № 91:

Գինը 20 կ.



ՀԽՏ ԿԱՆ ԳՐԱԴԱՐԱՆ ГСС Б БИБЛИОТЕКА

digitised by A.R.A.R.@

ՄԵՐ ՕՐԱՑՈՒՅՑԸ
ՄԵՐ ՕՐԱՑՈՒՅՑԸ



# ՄՈՒՍՈՐԳՍԿԻ

1856 թվական։ Պետերբուրգի խստաշունչ ձմռան մի երեկո էր։

Ալեքսանդր Սերգեևիչ Դարգոմիժսկու տունը սովորականի նման լեփ-լեցուն էր մշտական հյուրերով։ Հավաքվածները մեծ ոգևորությամբ երգում ու դաշնամուր էին նվագում, կատարում էին արքունական թատրոնների կողմից մերժված կամ ծախողված՝ Գլինկայի, Բալակիրևի, Դարգոմիժսկու և շատ ուրիշների օպերաներից, երգերից։

Այդ օրը Դարգոմիժսկին իր հյուրերի մեջ մի անծանոթ տեսավ։

— Ճանաչո՞ւմ ես այդ երիտասարդ սպային,— հարցրեց նա Բալակիրևին,— մի նայի՛ր, ո՞վ է այն սիրուն պատանին...

Դեռ չէր հասցրել նա խոսքն ավարտել, երբ իր երաժշտասեր ընկերներից մեկը ներկայացրեց անծանոթին..

— Ծանոթացե՛ք խնդրեմ, ընկերս է, Մոդեստ Պետրովիչ Մուսորգսկին։ Տասնյոթ տարեկան է, բայց արդեն գվարդիայի սպա։ Գլինկայի երաժշտության երկրպագու։ Եկել է իր սիրելի կոմպոզիտորին և մեր ռուսական երաժշտությունը լսելու, իսկ եթե ցանկանաք՝ նաև կատարելու...

...Այդ օրը դարձավ Մուսորգսկու երազների իրականացման սկիզբը։

Տասը տարեկան էր Մոդեստը, երբ հայրը նրան բերեց Պետերբուրգ։ Հեռվում մնացել էր Պըսկովի նահանգի կարևո գյուղը, որի ընդարձակ դաշտերի, անտառների ու լճերի գրկում անցել էր նրա մանկությունը։ Գյուղը, ուր նա տեսել և ճանաչել էր չարքաշ կյանքով ապրող պարզ ու հասարակ ռուս գյուղացուն։

Պետերբուրգը Մոդեստին առավ իր ոլորտը։ Զինվորական դըպրոցում սովորելուն զուգընթաց՝ նա դաշնամուրի դասեր էր վերցնում հայտնի ուսուցիչ Գերկերից։ Դեռ տասներեք տարեկան էր նա, երբ հրատարակվեց նրա «Պոլկան», որը ստեղծել էր հանպատրաստից, իր դասընկերների համար նվագելիս։

Մանկությունը վերջացավ։

Պատանին ուզում էր լսել իր ժողովրդի կյանքն ու կենցաղը, պատմական անցյալը արտացոլող երաժշտություն։ Եվ ո՛չ միայն լսել, այլև ստեղծել։ Ստեղծել ճշմարիտ կյանքն արտացոլող երաժշտություն։

Բայց այդ ցանկությունն իրականացնելն այնքան էլ հեշտ չէր, քանի որ նրա գվարդիական ընկերները ու ազնվականները սիրում և ընդունում էին միայն իտալական թեթև երաժշտությունը։

Ահա այդ ժամանակ էր, որ նա ծանոթացավ երաժշտագետների «Հզոր խմբի» հետ ու դարձավ նրա ամենաակտիվ մասնակիցներից մեկը։ Իսկ նրա հրաշալի ձայնը, նվագելու վարպետությունը, կատակասեր բնավորությունը աննկատ չմնաց։

Դարգոմիժսկու և Բալակիրևի ազդեցության տակ, Մուսորգսկին թողեց զինվորական ծառայությունը, որպեսզի ամբողջովին նվիրվի երաժշտությանը։

Նյութական ծանր պայմանները չընկճեցին նրա ստեղծագործական միտքը։ Եվ իրար հետևից նա գրեց՝ «Կալիստրատ», «Հոպակ», «Սավիշնա հոգյակ», «Որբուկ», «Երյոմուշկայի օրորոցի երգը», «Կունդ լեռան գագաթի վրա», «Պատկերներ ցուցահանդեսից» և շատ ուրիշ երգեր, որոնց մեջ ցնցող ուժով պատկերեց ռուսական գյուղացիության իրավազուրկ վիճակը, աղքատությունը և դրան հակադրելով՝ հնչեցրեց նրա բարոյական մեծության թեման։

Այդ գաղափարի արտահայտությունը եղավ «Բորիս Գոդունով» օպերան, որ այժմ կատարվում է աշխարհի գրեթե բոլոր լավագույն օպերային թատրոններում և Մուսորգսկու գլուխգործոցն է հանդիսանում։ Նրա գրչին են պատկանում նաև «Խովանշչինա», և «Սորոչինյան տոնավաճառ» օպերաները։

Լրացավ մեծ կոմպոզիտորի ծննդյան 125 տարին։

*ԱՍՅԱ ՍԱՀԱԿՅԱՆ*

digitised by A.R.A.R.@

Նկ. ՎԱՉԷ ԹԵՎԱՆՅԱՆԻ

# ԲԱԼԼԱԴ ՄԵԴԱԼԻ ՄԱՍԻՆ

ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

Լռության մեջ խորհրդավոր
Վայրկյաններն են հոսում,
Գրչածայրը մեղմ շշունով
Թղթի հետ է խոսում։
Ու թեքվել է թղթի վրա
Մի լայն ու պարզ ճակատ,
Խոհուն ու խոր իմաստության
Կնճիռներով պատած...
Եվ խոհերը իջնում թղթին
Ու տողեր են դառնում,
Եվ տողերից՝ առավոտի
Ժպիտներ են հառնում։
Գրում է նա, խորհում այսպես,
Իմաստնությամբ խաղաղ...
Դու Իլյիչին չխանգարես,
Չարաճճի՛ տղա։

* * *

Լռության մեջ խորհրդավոր
Վայրկյաններն են հոսում,
Բայց փոքրիկը մոտենալով՝
Լռությունն է խզում։
Ձեռքին մահուդ կա մոխրագույն
Ու մեդալ կա ոսկե,
Եվ չի կարող Վիտյան իսկույն
Գտնել հարմար խոսքեր...
— Տո՛ւր ինձ սիրուն այս դրամը,
Տո՛ւր ինձ, Լենին քեռի։—
Ասում, ուրախ ցույց է տալիս
Նա մեդալը ձեռի...—
Տուր այս զարդը քո դարակի
Ինձ մի օրով գոնե,
Որ փոքրերին ցույց տամ բակի,
Թե ինչ նվեր ունեմ։—
Իսկ Իլյիչը աչքերնահա
Կկոցում է, նայում
Եվ Վոլգան է հիշում մի պահ՝
Ափին ծաղկած գարուն,
Դպրոցական ընկերների
Վերջին աղմուկն ուրախ.
— Գերազանցիկ Ուլյանովին՝
Ոսկե մեդալ... ուռա՜...—
Պատանեկան երգով թռած
Տարիներն է հիշում,
Իսկ մեդալը լեզու առած՝
Դեռ պատմում է, հուշում...
Կկոցում է՛ աչքերն էլի
Ու նայում է լույսին,
Հետո ձեռքն է դնում փոքրիկ
Հարազատի ուսին.
— Է՛խ, է՛խ, Վիտկա, է՛խ, միամի՜տ,
Փորձանք ես դու, փորձանք.
Կատարում ես միանգամից
Երկու ծանր հանցանք...
Դու վերցրել ես քեզ երբևէ
Չպատկանող մի բան
Եվ ուզում ես դու ինձ զրկել
Հուշից պատանեկան։—
Շփոթվում է, շիկնում տղան,
Ալ կակաչ է դառնում,
Իսկ Իլյիչը ձեռքը մանկան
Ափի մեջ է առնում.
— Իմ հուշն է սա դպրոցական,
Իմ նվերն է, տղա՛ս,
Խորհուրդ չեմ տա՝ հուշի հետ թանկ
Դու երբևէ խաղաս։



digitised by A.R.A.R.@